ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1961

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1961 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVIII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՍՄԿՊ ՆՈՐ ԾՐԱԳՐԻ ԵՎ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՆԱԽԱՀԱՄԱԳՈՒՄԱՐՅԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



### ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

СОДЕРЖАНИЕ





# ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՆՎԻՐԱԿԱՆ ԵՐԱԶԱՆՔԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ ԾՐԱԳԻՐԸ

Կոմունիստների լենինյան պարտիան երրորդ անգամն է հռչակում հասարակական կյանքը վերափոխող, աշխատավոր մարդկության դարավոր տենչերը մարմնացնող իր ծրագիրը: Առաջնորդվելով առաջին և երկրորդ ծրագրերով, պարտիան հաղթանակով պսակեց սոցիալիստական ռևոլյուցիան մեր Հայրենիքում, անօրինակ հերոսական ճիգերի գործադրումով, սովետական ժողովրդի գլուխն անցած, նա գործի վերածեց սոցիալիզմի կառուցման լենինյան իր ծրագիրը, որի շնորհիվ հաղթանակեց լիակատար սոցիալիստական կարգը:

Ժողովրդի քննարկմանը դրված կոմունիզմի կառուցման պարտիայի նոր Ծրագրի նախագիծը, որպես մեր դարաշրջանի մարքս-լենինյան հանճարի փարոս, լուսավորում է երջանկալի գալիքի ուղիները, մատնանշում վեհ նպատակին հասնելու կոնկրետ միջոցները: Այն՝ հին աշխարհի կեղեքվող մարդկության սոցիալական ազատագրության ամենաճշմարիտ ուղեցույցն է: Ահա թե ինչու ոչ միայն սոցիալիստական լագերի աշխատավորները, այլև միջազգային բանվոր դասակարգը և աշխարհի ճնշված ժողովուրդները ՍՄԿՊ Նոր Ծրագիրն ընկալեցին անկեղծ հրճվանքի բուռն պոռթկումով:

Մե՜ծ է մեր պարտիայի նոր Ծրագրի նախագծի ստեղծարար ուժը, աշխարհը հեղափոխականացնող, մարդկությանը խաղաղություն և ազատություն բերող նրա անկապտելի հմայքը:

Պարտիայի Ծրագրի նախագիծը մեր դարաշրջանի ամենառևոլյուցիոն, լենինյան գաղափարներով տոգորված տեսական ու քաղաքական մի փաստաթուղթ է, որը հանդիսանում է մեծ ավանդ մարքս-լենինյան գաղափարախոսության գանձարանում:

ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագիծը ընդգրկում է սովետական ժողովրդի կյանքի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի բոլոր հիմնական կողմերը, միջազգային կյանքի կարգացման կարևորագույն հարցերը: Մեր դարաշրջանի այդ պատմական փաստաթուղթը այն գաղափարական հզոր վենքն է, որի օգնությամբ միջազգային կոմունիստական ու բանվորական պարտիաները կմերկացնեն ու կջախջախեն իմպերիալիստական բուրժուազիայի հետադիմական գաղափարախոսության, ռեֆորմիզմի, ռևիզիոնիզմի և դոգմատիզմի բոլոր դրսևորումները:

Ծրագրի նախագծում ճշմարտացիորեն վերլուծված է այն հսկայական գերազանցությունն ու առավելությունը, որ սոցիալիզմն ունի կապիտալիզմի նկատմամբ:

***

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախա-
գծում գիտական խորությամբ բնութագրված է մեր դարաշրջանը՝ կապիտալիզմից
ռևոլյուցիոն ուղիով սոցիալիզմին անցնելու դարաշրջանը: Նրա էջերում հստակո-
րեն վերլուծված է արդի կապիտալիստական հասարակարգի իմպերիալիստական
էությունը, վեր են հանված իմպերիալիզմի փտմանն ու նեխմանը ներհատուկ հակա-
սությունները: Այդ մասին է վկայում այն, որ ԱՄՆ-ի արտադրողական կարողության
մոտ 20 տոկոսը (իսկ մի քանի ճյուղերում՝ 40—50 տոկոսը) սիստեմատիկաբար
չի օգտագործվում:

Կապիտալիստական հասարակարգին հատուկ հակասությունների սրման հե-
տևանքով աճում է աշխատավորական մասսաների դժգոհությունը, որը ստիպում է
բոլոր շահագործվողներին սերտորեն համախմբվել կոմունիզմի դրոշի ներքո և գրո-
հել կեղեքման վրա հանգչող հին աշխարհի դեմ:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որ կատարեց Ռուսաս-
տանի բանվոր դասակարգը Վ. Ի. Լենինի գլխավորած Կոմունիստական պարտիայի
ղեկավարությամբ, ճեղքելով իմպերիալիզմի ճակատն աշխարհի մեծ երկրներից մե-
կում, «հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, ստեղծեց նոր տիպի պետություն՝
Սովետական պետությունը, նոր տիպի դեմոկրատիա՝ դեմոկրատիա աշխատավորնե-
րի համար»: Կանգնելով պետության ղեկի մոտ, մեր երկրի աշխատավորները լայն
հնարավորություններ ստեղծեցին երկրի արտադրողական ուժերի կարգացման հա-
մար:

Դժվարին, բայց փառավոր պայքարի ճանապարհ է անցել սովետական ժողո-
վուրդը: Զինված մարքս-լենինյան ամենահաղթ գաղափարներով, բարձր պահելով
կոմունիզմի վեհ դրոշը, նա հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարու-
թյամբ հաղթական ճակատամարտեր է մղել իմպերիալիզմի ոտնձգությունների
դեմ, պայքարել է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին դավաճանողների ու երե-
րուն տարրերի դեմ, բոլոր արգելքները հաղթահարելով, ապահովել է մեր երկրի
անկախությունն ու ազատությունը:

Պատմականորեն շատ կարճ ժամանակամիջոցում մեր Հայրենիքը տնտեսա-
պես հետամնաց երկրից դարձավ հզոր սոցիալիստական պետություն՝ առաջավոր
արդյունաբերությամբ, համայնական գյուղատնտեսությամբ, ծաղկող գիտությամբ:
Սովետական գիտության և տեխնիկայի նորանոր սխրանքներն իրենց վրա են
կենտրոնացրել երկրագնդի բոլոր մարդկանց ուշադրությունը: «Օրինաչափ է,—
ասված է Ծրագրի նախագծում,—որ հաղթանակած սոցիալիզմի երկիրն առաջինը
բացեց ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու դարաշրջանը,
առաջինը հարթեց տիեզերական տարածության ճանապարհը: Երկրի ու արևի ար-
հեստական արբանյակները, տիեզերական հզոր հրթիռներն ու միջմոլորակային
տիեզերանավերը, ատոմային էլեկտրակայանները, երկրագնդի շուրջը տիեզերա-
նավով սովետական մարդու՝ աշխարհում առաջին հաղթական թռիչքը դարձան
հաղթանակող կոմունիզմի ստեղծագործական ուժերի խորհրդանիշը, բովանդակ
մարդկության հպարտությունը»:

Յուրի Գագարինի և Գերման Տիտովի աշխարհացունց թռիչքները տիեզերքի
անհուններում սովետական գիտության դարակազմիկ հաղթանակի փայլուն ապ-
դանշաններն են, որոնք անթառամ փառքով պսակեցին սոցիալիզմի լագերի ժողո-



վուրդների ստեղծագործ հանճարը: Ուստի և բնական է, որ սոցիալիստական երկ-
րի մարդկանց սխրանքներն իրենց վրա են բևեռել աշխարհի ուշադրությունը:

Եվ այսպես, սոցիալիզմի մայրուղին հարթված է: Կատարելով հասարակական
զարգացման նոր ուղի բացելու առաջամարտիկի դեր, սովետական ժողովուրդն
ամբողջ ավնիվ մարդկանց ցույց տվեց, որ այն, ինչ իրագործվել է ՍՍՌՄ-ում, լիո-
վին կարելի է կենսագործել նաև մյուս երկրներում: Սովետական ժողովրդի ձեռք
բերած հաղթանակների շնորհիվ, խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի
գաղափարները լայնորեն թափանցեցին աշխատավորական զանգվածների սրտե-
րում և նրանց գոտեմարտի են կոչում ընդդեմ կեղեքողների տիրակալության:

***

Երկրորդ համաշխարհային պատերազմում գերմանական ֆաշիզմի ու ճապոնա-
կան միլիտարիզմի ջախջախման գործում վճռական դեր խաղացին Սովետական
Միությունը, նրա Զինված Ուժերը, որի շնորհիվ նպաստավոր պայմաններ ստեղծ-
վեցին Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների ժողովուրդների համար՝ տապալե-
լու կապիտալիստների ու կալվածատերերի լուծը: 1917 թվականի մեծ Հոկտեմբե-
րից հետո սոցիալիստական ռևոլյուցիաների հաղթանակը Չինաստանում, Եվրոպա-
յի ու Ասիայի մի շարք երկրներում նոր, հուժկու հարված հասցրին իմպերիալիզ-
մի դիրքերին: Համաշխարհային կապիտալիստական սիստեմի կողքին *ստեղծվեց
սոցիալիզմի համաշխարհային սիստեմ*, ազատ սուվերեն ժողովուրդների սոցիա-
լական, տնտեսական-քաղաքական համագործակցությամբ: Այժմ սոցիալիզմի ազա-
տարար դրոշը ծածանվում է երկրագնդի մեկ քառորդի վրա: Գիտական կոմունիզմի
դրոշի ներքո համախմբված ավելի քան մեկ միլիարդ մարդ կառուցում են երջանիկ
նոր կյանք, որոնց նպատակները վեհ են, շահերն ընդհանուր:

«Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը,—ասված է Ծրագրի նախագծում,—
*երկրների տնտեսական ու քաղաքական հարաբերությունների նոր տիպ է*: Սոցիա-
լիստական երկրներն ունեն միատիպ տնտեսական հիմք՝ արտադրության միջոցնե-
րի հանրային սեփականություն. միատիպ պետական կարգ՝ ժողովրդի իշխանու-
թյուն՝ բանվոր դասակարգի գլխավորությամբ. միասնական գաղափարախոսու-
թյուն՝ մարքսիզմ-լենինիզմը. ընդհանուր շահեր՝ ռևոլյուցիոն նվաճումներն ու ազ-
գային անկախությունը իմպերիալիստական լագերի ոտնձգություններից պաշտ-
պանելու գործում: Միասնական մեծ նպատակ՝ կոմունիզմ: Սոցիալ-տնտեսական
ու քաղաքական այդ ընդհանրությունը օբյեկտիվ հիմք է ստեղծում սոցիալիստա-
կան լագերում միջպետական ամուր ու բարեկամական հարաբերությունների հա-
մար»:

Սոցիալիստական լագերում համախմբված ժողովուրդների փորձով հաստատ-
ված է, որ նրանց եղբայրական միասնությունն ու համագործակցությունը համա-
պատասխանում են յուրաքանչյուր երկրի ազգային շահերին: Աշխարհի բոլոր
ժողովուրդները, ազնիվ մարդիկ, սոցիալիստական երկրների համագործակցության
մեջ տեսնում են ամբողջ մարդկության երջանիկ ապագայի նախատիպը:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի, Եվրոպայում և Ասիա-
յում տեղի ունեցած սոցիալիստական ռևոլյուցիաների փորձը ցույց տվեց, որ պրո-
լետարիատի դիկտատուրան այս կամ այն ձևով անհրաժեշտ է կապիտալիզմից սո-
ցիալիզմին անցնելու համար: Առանց պրոլետարիատի դիկտատուրայի բանվոր դա-
սակարգն անկարող է սոցիալիզմ կառուցել: Դրա համար ՍՄԿՊ-ն, կոմունիստա-

կան և բանվորական պարտիաները անաղարտ պահպանելով ու կյանքում կենսա-
գործելով մարքսիզմ-լենինիզմը, անհաշտ պայքար են մղում ռեֆորմիստների դեմ,
որոնք ժխտում են պրոլետարիատի դիկտատուրայի անհրաժեշտությունը:

Ապահովելով սոցիալիզմի լիակատար հաղթանակը մեր երկրում, պրոլետա-
րիատի դիկտատուրան միաժամանակ հաջողությամբ կատարեց պատմական իր
միսիան, դարձավ համաժողովրդական պետություն: «Շահագործող դասակարգե-
րի վերացման կապակցությամբ,—ասված է Ծրագրի նախագծում,—մահացավ
նրանց դիմադրությունը ճնշելու ֆունկցիան: Բազմակողմանի զարգացում ստա-
ցան սոցիալիստական պետության գլխավոր ֆունկցիաները՝ տնտեսական-կազ-
մակերպչական և կուլտուր-դաստիարակչական ֆունկցիաները: Սոցիալիստական
պետությունը թևակոխեց նոր փուլ: Սկսվեց պետությունը՝ սոցիալիստական հա-
սարակարգի աշխատավորների համաժողովրդական կազմակերպության վերաճե-
լու պրոցեսը: Պրոլետարական դեմոկրատիան ավելի ու ավելի էր վերածվում հա-
մաժողովրդական սոցիալիստական դեմոկրատիայի»:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան գաղութային ու կիսագա-
ղութային երկրներում հարյուր միլիոնավոր մարդկանց ոտքի հանեց դեն շպրտելու
իմպերիալիզմի ստրկացուցիչ շղթաները: Այժմ աշխարհն ապրում է ազգային ազա-
տագրական բուռն ռևոլյուցիաների ժամանակաշրջան:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախագծում
ասված է, որ սոցիալիզմի լագերի երկրները կողմնակից են ոչնչացնելու գաղութա-
յին ճնշման բոլոր ձևերը, հնարավորություններ ընձեռել ամրապնդելու ազատության
ուղին բռնած երկրների քաղաքական անկախությունը: Ինչպես նշված է Ծրագրի
նախագծում, բոլոր ժողովուրդների ազատության ու երջանկության միակ ու ճիշտ
ուղին սոցիալիզմն է:

***

Ծրագրի նախագծում տեսականորեն հիմնավորված ու ավելի են հարստաց-
ված հասարակական երկու սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան
գաղափարները: *«Խաղաղ գոյակցությունը ենթադրում է՝* հրաժարվել պատերազմից,
որպես պետությունների միջև վիճելի հարցերը լուծելու միջոց,—ասված է Ծրագրի
նախագծում,— այդ հարցերը լուծել բանակցությունների միջոցով. իրավահավասա-
րություն, փոխըմբռնում և վստահություն պետությունների միջև... խստորեն հարգել
բոլոր երկրների սուվերենությունը և տերիտորիալ ամբողջականությունը...»:

Կոմունիստական պարտիան, Սովետական կառավարությունը մինչև այժմ հե-
տևողականորեն պաշտպանել են և այսուհետև էլ կպաշտպանեն տարբեր հասարա-
կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականությունը: Չէ
որ կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի, ինչպես և ամբողջ ազատասեր
մարդկության համար հարկավոր է կայուն ու տևական խաղաղություն: Բայց քանի
որ պահպանվում է իմպերիալիստական լագերից բխող պատերազմական վտանգը,
Կոմունիստական պարտիան այսուհետև ևս կամրապնդի սոցիալիզմի համաշխար-
հային սիստեմի պաշտպանունակությունը, կապահովի նրա անվտանգությունը:

***

Ավարտելով սոցիալիստական հասարակարգի կառուցումը, այժմ մեր պար-
տիան իր գլխավոր խնդիրն է համարում ստեղծել անդասակարգ կոմունիստական



հասարակարգ: Ահա թե ինչու նոր Ծրագրի նախագծում հանգամանորեն մշակված
ու կանխագծված են ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման ձևերն ու միջոցները:

Կոմունիստական հասարակարգի կառուցումը,—ասված է Ծրագրի նախա-
գծում,—դարձել է սովետական ժողովրդի անմիջական գործնական խնդիրը: Սո-
ցիալիզմից աստիճանական վերաճումը կոմունիզմի օբյեկտիվ օրինաչափություն
է. այդ վերաճումը նախապատրաստված է Սովետական Սոցիալիստական հասա-
րակարգի ամբողջ նախընթաց զարգացումով:

Պարտիայի ու սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրն է՝ առա-
ջիկա երկու տասնամյակների (1961—1980 թթ.) ընթացքում ստեղծել *կոմունիզմի
նյութա-տեխնիկական բազա, ՍՍՌՄ-ում հիմնականում կառուցել կոմունիստական
հասարակարգ: Իսկ հաջորդ ժամանակաշրջանում լիակատար ավարտել կոմունիզ-
մի կառուցումը:*

Այդ նպատակին հասնելու համար պարտիան իր առջև խնդիր է դնում՝ երկրի
լրիվ էլեկտրիֆիկացում և դրա հիման վրա տեխնիկայի, հանրային արտադրության
տեխնոլոգիայի ու կազմակերպման կատարելագործում արտադրության և գյուղա-
տնտեսության մեջ, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում, քի-
միայի լայն կիրառում ժողովրդական տնտեսության մեջ և այլն: Այս հիման վրա
Սովետական Միությունը կունենա իրենց հզորությամբ չտեսնված արտադրողական
ուժեր, որոնք կգերազանցեն ամենից ավելի զարգացած, այդ թվում՝ Ամերիկայի
Միացյալ Նահանգների տեխնիկական մակարդակը և բնակչության մեկ շնչին ընկ-
նող արտադրանքի արտադրությամբ մեր երկիրն առաջին տեղը կգրավի աշխար-
հում: Ինչպես անցյալներում, այնպես էլ առաջիկայում ՍՄԿԿ ուշադրության կենտ-
րոնում է լինելու ծանր ինդուստրիայի զարգացումը՝ որպես աշխատավորության
նյութական բարեկեցության բարձրացման և երկրի պաշտպանունակության հզորու-
թյան ամրապնդման հիմքերի հիմքը:

Ծրագրի նախագծով նախատեսված է արդյունաբերության *արտադրանքի ծա-
վալը մեծացնել* (քսան տարվա ընթացքում) ոչ պակաս, քան *վեց անգամ* և անհա-
մեմատ գերազանցել ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության ներկայիս ընդհա-
նուր ծավալը:

Արդյունաբերության ինտենսիվ զարգացումը պրոգրեսիվ խոշոր տեղաշարժեր
կհարուցի նրա կառուցվածքի մեջ: Երկրի էլեկտրիֆիկացումը, որը կոմունիստական
հասարակարգի էկոնոմիկայի կառուցման առանցքն է, կզարգանա ուժեղ թափով:
Էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունն երկրորդ տասնամյակի վերջում
կհասնի 2700—3000 միլիարդ կիլովատ ժամի (այս տարվա համար նախատեսված
320 միլիարդ կիլովատ ժամի դիմաց): Արդեն այժմ էլեկտրաէներգիայի արտադրու-
թյան տեմպերով Սովետական Միությունը առաջ է անցել ԱՄՆ-ից: 1954—1959
թթ. էլեկտրաէներգիայի արտադրության տարեկան միջին աճը ՍՍՌՄ-ում եղել է
11,9, իսկ ԱՄՆ-ում՝ 7 տոկոս: Այսպիսով, լիովին կիրագործվի երկրի էլեկտրիֆի-
կացման լենինյան գաղափարը:

Գալիք քսան տարվա ընթացքում մեր երկրում մեծ չափերով կաճի ոչ միայն
նավթի ու գազի, այլև սև մետալուրգիայի արտադրությունը: Երկիրն ի վիճակի
կլինի տարեկան ձուլելու մոտ 250 միլիոն տոննա պողպատ: Քսանամյակում մեծ
չափերով կծավալվի թեթև, գունավոր և հազվագյուտ մետաղների արտադրությունը:

Դեպի կոմունիզմ սովետական գյուղի առաջընթացը կկատարվի սոցիալիստա-
կան տնտեսության երկու ձևերի՝ կոլտնտեսությունների և սովխոզների զարգացման
ու կատարելագործման ուղղությամբ: Պարտիան իր առջև խնդիր է դնում առաջիկա

քան տարում *գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը մեծացնել երեք և կես անգամ:* Հասնել այն բանին, որպեսզի գյուղատնտեսական մթերքների առատությունն ամբողջ բնակչության ու արդյունաբերության պահանջմունքները լիովին բավարարվեն: Կիրագործվի իռիգացիոն շինարարության ընդարձակ պլան: *Սովետական Միությունը առաջիկա տասը տարում Ամերիկայի Միացյալ Նահանգներից կանցնի բնակչության մեկ շնչին ընկնող հիմնական գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ:*

Մեքենաշինական արդյունաբերության կարգացման շնորհիվ *կոմպլեքսային մեքենայացումը* կկենսագործվի արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության մեջ, տրանսպորտում և այլն: Արդյունաբերության մեջ կարագանա ավտոմատ կառավարման կատարյալ սիստեմների արմատավորումը:

Թե՛ արդյունաբերության, թե՛ գյուղատնտեսության, տրանսպորտի ու կոմունալ տնտեսության աշխատատար պրոցեսների մեքենայացումը խոշոր չափով կնպաստի մարդու աշխատանքի թեթևացմանը, որի շնորհիվ մեծ չափով կաճի աշխատանքի արտադրողականությունը: Քսանամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա արդյունաբերության մեջ ավելի քան *չորս ու կես անգամ*, իսկ գյուղատնտեսության մեջ՝ *հինգ-վեց* անգամ:

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում ևս սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հարցը կմնա Կոմունիստական պարտիայի ուշադրության կենտրոնում: ՍՍՌՄ ազգային եկամտի ծավալը քսան տարում կաճի մոտավորապես հինգ անգամ, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները՝ ավելի քան երեք ու կես անգամ:

«Սովետական ժողովրդի հերոսական աշխատանքը,—ասված է Ծրագրի նախագծում,—ստեղծեց հզոր ու բազմակողմանիորեն կարգացած էկոնոմիկա: Այժմ բոլոր հնարավորությունները կան ամբողջ բնակչության՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի բարեկեցության արագ բարձրացման համար: ՍՄԿՊ-ն դնում է համաշխարհային պատմական նշանակություն ունեցող խնդիր՝ Սովետական *Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ՝ կապիտալիզմի ամեն մի* երկրի համեմատությամբ:

***

Ծրագրի նախագծում հանգամանորեն շարադրված են պարտիայի խնդիր-
ները ազգային հարաբերությունների, գաղափարախոսության, դաստիարակության,
գիտության ու կուլտուրայի բնագավառներում:
Կոմունիստական պարտիան առաջվա պես կվարի բոլոր ազգերի, ազգություն-
ների փաստական հավասարությունն ապահովող քաղաքականություն: ՍՍՌՄ-ում
կոմունիզմի հաղթանակի շնորհիվ տեղի կունենա ազգերի է՛լ ավելի մերձեցում,
կաճի նրանց տնտեսական ու գաղափարական ընդհանրությունը, կկարգանան
նրանց հոգևոր կապերի կոմունիստական ընդհանուր գծերը: Կոմունիստական շի-
նարարության լայն թափը և կոմունիզմի գաղափարախոսության նոր հաղթանակնե-
րը հարստացնում են՝ բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտու-
րան: Պարտիայի նպատակն է «այսուհետև ևս հետևողականորեն կիրառել ինտեր-
նացիոնալիզմի սկզբունքները... ամրապնդել ժողովուրդների կապը՝ որպես սոցիա-
լիզմի կարևորագույն նվաճումներից մեկը. անհաշտ պայքար մղել ամեն տեսակի
նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների ու մնացուկների դեմ»:



***

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախագծի վերջին մասը նվիրված է պարտիային, նրա գործունեությանը կոմունիզմի ժամանակաշրջանում: Այս բաժնում միաժամանակ համառոտակի շարադրված է պարտիայի նոր Կանոնադրության կառուցվածքը:

«ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի,—ասված է Ծրագրում,—սովետական հասարակության միասնության ամրապնդման շնորհիվ բանվոր դասակարգի Կոմունիստական պարտիան վերածվեց սովետական ժողովրդի ավանգարդի, դարձավ ամբողջ ժողովրդի պարտիա, ընդլայնեց իր ղեկավար ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա: Պարտիան մեր դարաշրջանի, ռևոլյուցիոն մեծ վերափոխումներ կատարող սովետական ժողովրդի միտքն է, պատիվն ու խիղճը»:

Առաջնորդվելով մարքս-լենինյան ուսմունքով, պարտիան գտնում է, որ նա *գոյություն ունի ժողովրդի համար, նրան ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության իմաստը:* Ծառայել ժողովրդին, այդ նշանակում է պայքարել նրա իղձերն ու վեհ նպատակները իրականացնելու համար: Իրեն նպատակ դնելով կոմունիզմի կառուցումը, պարտիան հանդես է գալիս սովետական ժողովրդի ստեղծագործ նախաձեռնությունների ղեկավարի, կազմակերպչի ու ոգեշնչողի դերում: Պարտիայի ամբողջ գործունեությունն ուղղված է այն նպատակին, որպեսզի է՛լ ավելի կատարելագործվեն ժողովրդական ներկայացուցչության ձևերը, կարգանան սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական սկզբունքները՝ պետական կառավարման գործում բարձրանա հասարակական կազմակերպությունների դերը:

Սովետական մարդու բարոյա-քաղաքական ու դաստիարակության հարցերը մնում են պարտիայի ուշադրության կենտրոնում: Կոմունիստական հասարակարգ կառուցող մարդկանցից պահանջվում է հանդես բերել օրինակելի աշխատասիրություն, կարգապահություն, հանրային սեփականության խստագույն պահպանում, անձնվեր աշխատանքով նպաստել սոցիալիստական Հայրենիքի պաշտպանունակության ամրապնդմանը, հոգատար լինել երեխաների նկատմամբ, հարգանքով վերաբերվել ընտանիքին:

Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում տրված են նոր մարդու համակեցության կանոնները. հավատարմություն կոմունիզմի գործին, սեր սոցիալիստական Հայրենիքի, սոցիալիզմի երկրների հանդեպ, յուրաքանչյուրի հոգատարություն՝ հասարակական ունեցվածքը պահպանելու ու բազմապատկելու համար. կոլեկտիվիզմ և ընկերական փոխօգնություն, մեկը՝ բոլորի համար, բոլորը՝ մեկի. մարդասիրական հարաբերություններ և փոխադարձ հարգանք հասարակության անդամների միջև՝ մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր: Սովետական Միության բոլոր ժողովուրդների բարեկամություն և եղբայրություն, անհանդուրժողականություն ազգային ու ռասայական անբարյացակամության նկատմամբ. անհաշտություն կոմունիզմի, խաղաղության և ժողովուրդների ազատության գործի թշնամիների նկատմամբ:

ՍՄԿՊ Ծրագրի նախագծում շարադրված են պարտիական կյանքի լենինյան նորմերի հիմնական սկզբունքները: Դատապարտելով անհատի պաշտամունքն ու ղեկավարման կոլեկտիվության, ներպարտիական դեմոկրատիայի ու սոցիալիստական օրինականության խախտման երևույթները, պարտիան պահանջում է հետևողականորեն կենսագործել ղեկավարության կոլեկտիվության սկզբունքները, «պրակտիկայի մեջ մտցնել պարտիայի բոլոր ընտրովի օրգանների կազմի,—ասված է Ծրա-

գրի նախագծում,—սկզբնական կազմակերպություններից մինչև Կենտրոնական Կոմիտեն, սիստեմատիկ թարմացումը որոշակի համամասնություններով, ընդսմին ապահովելով ղեկավարության հաջորդականությունը»:

Յուրաքանչյուր կոմունիստից պարտիան պահանջում է անխախտ պահպանել նրա շարքերի գաղափարական ու կազմակերպական միասնությունը, քայլել կոմունիզմ կառուցողների հզոր բանակի առաջավոր շարքերում:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրում նախատեսված վիթխարի խնդիրների կենսագործումը համաշխարհային պատմական նշանակություն ունի: Պարտիան բոլոր կոմունիստներին, ամբողջ սովետական ժողովրդին կոչ է անում՝ աշխատել հաստատակամորեն, ակնվաբար, գործադրել իրենց ջանքերը Ծրագրում առաջադրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Այժմ կոմունիզմը ոչ թե հեռավոր երազանք է, այլ կառուցվող հասարակարգ:

*«ՊԱՐՏԻԱՆ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ԿԵՐՊՈՎ ՀՌՉԱԿՈՒՄ Է՝ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ՆԵՐԿԱՅԻՍ ՍԵՐՈՒՆԴԸ ԿԱՊՐԻ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՕՐՈՔ»:*

***

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Կանոնադրության նախագծում ստեղծագործաբար ընդհանրացված են պարտիական շինարարության լենինյան հիմնական դրույթները: Կանոնադրության նախագծում շատ սեղմ, սակայն խոր ու ոգեշնչող տողերով շարադրված է բոլշևիկների պարտիայի մարտական փառապանծ ուղին և հստակորեն տրված նրա բնորոշումը:

Հանդիսանալով միջազգային կոմունիստական ու բանվորական պարտիայի բաղկացուցիչ ու անկապտելի մասը, ՍՄԿՊ-ն ստեղծագործաբար հարստացնում է մարքսիզմ-լենինիզմը, այն անշեղորեն կենսագործում կյանքում և վճռական պայքար մղում ռևոլյուցիոն տեսությանը խորապես խորթ ռևիզիոնիզմի ու դոգմատիզմի ամեն մի դրսևորման դեմ:

Հանդիսանալով սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, «պարտիան ղեկավարում է սովետական ժողովրդի ստեղծարար մեծ գործունեությունը,—ասված է Կանոնադրության նախագծում,—կազմակերպված, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս նրա պայքարին հանուն վերջնական նպատակի՝ կոմունիզմի հաղթանակի»: Այդ հաղթանակն ապահովելու համար կանոնադրական պարտավորություններ են դրվում պարտիայի անդամի վրա՝ լինել պայքարել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար, լինել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ, պաշտպանել և տարածել առաջավոր փորձը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, պահպանել պետական ու պարտիական կարգապահությունը և այլն: Ամեն մի կոմունիստի սրբազան պարտքն է ճշտությամբ կատարել այս պատասխանատու, միաժամանակ պատվավոր պարտականությունները: Յուրաքանչյուր կոմունիստ իր ամբողջ կյանքում պետք է ճշտությամբ պահպանի և աշխատավորների մեջ արմատավորի ՍՄԿՊ Ծրագրի նախագծում շարադրված սովետական մարդու՝ բարոյական կոմունիզմ կառուցողի կոդեքսը:

ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախագծում ևս պարտիական կազմակերպական կառուցվածքի հիմքում մնում է դեմոկրատական ցենտրալիզմը, իհարկե ավելի դեմոկրատական սկզբունքով: Կոմունիստական պարտիայի ներքին կյանքի օրենքն է՝ անաղարտորեն պահպանել լենինյան նորմերը պարտիական շինարարության հար-



ցերում՝ ապահովել կոլեկտիվ ղեկավարությունը, ծավալել քննադատությունը և ինքնաքննադատությունը, պահպանել կոմունիստների նախաձեռնությունը, կադրերի ընտրության և տեղաբաշխման ժամանակ հաշվի առնել նրանց քաղաքական և գործնական հատկությունները:

Պարտիական սկզբնական կազմակերպությունների ժողովներում և շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում իբրև օրակարգի հարցեր լայնորեն քննարկվեցին ՍՄԿՊ նոր Ծրագրի և Կանոնադրության նախագծերը: Այդ ժողովներում և կոնֆերանսներում կոմունիստները լայն ակտիվություն հանդես բերելով, միահամուռ կերպով հավանություն տվին պարտիայի նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերին և արին իրենց դիտողություններն ու առաջարկությունները:

***

Պարտիայի նոր Ծրագրի նախագիծը մեծ բերկրանքով է լցրել մեր երկրի աշխատավորների, բոլոր ազատասեր ու ազնիվ մարդկանց սրտերը: Նրանք սիրով ընթերցում և ուշադիր ուսումնասիրում են Ծրագրի իմաստալի էջերն ու մարգարեական տողերը: Ոգեշնչված մեր դարաշրջանի տեսական ու քաղաքական այդ պատմական փաստթղթով, սովետական մարդիկ ապրում են արտադրական բուռն խանդավառությամբ և ամեն ինչ անում են բարձր ցուցանիշներով դիմավորելու ՍՄԿՊ XXII համագումարը:

Ծրագրի հռչակած՝ Խաղաղություն, *Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն* նշանաբանները արժանացել են աշխատավոր մարդկության ջերմ ընդունելությանը:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի հրապարակումը միաժամանակ շփոթ ու սարսափ առաջ բերեց բուրժուական լագերի ռեակցիոն շրջաններում: Ամերիկյան «Նյու-Յորք թայմս» թերթը խիստ անհանգստացած Ծրագրի մեծ նպատակներից և այդ առթիվ համաշխարհային հասարակայնության ցուցաբերած ուշադրությունից, այն համարում է «ռազմական, քաղաքական, տնտեսական ու պրոպագանդիստական պատերազմի հայտարարում ընդդեմ ազատ աշխարհի»: Սակայն իզուր են պատերազմի հրձիգների այդ նենգափոխումները: Պատմության անիվը պտտվում է իր ընթացքով, աշխարհում ոչ մի ուժ այլևս չի կարող նրան ետ դարձնել:

Որքան ուզում են թող վայրահաչեն կոմունիզմի թշնամիները: Հասարակության վերընթաց զարգացման յուրաքանչյուր նոր էտապը մարքսիզմ-լենինիզմին բերում է նորանոր հաստատումներ, նորանոր հաղթանակներ: Սովետական մարդկանց աշխատանքային խանդավառությունը, կոմունիզմի կառուցման գործին նրանց նվիրվածությունը վճռական գրավականն է այն բանի, որ պարտիայի՝ կոմունիզմի կառուցման վեհ ծրագիրն անպայման կկատարվի:

Սկսվել է կոմունիզմի պայծառ առավոտը: Լենինյան ջերմ արևի շողերով սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, մարքսիզմ-լենինիզմի դրոշը բարձր պահած, համարձակորեն ու վստահ կերպով առաջ է գնում դեպի լուսաշող բարձունքի գագաթը:

# ՓԱՅԼՈՒՆ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐՆԵՐ. ՄԵԾ ԱՆԵԼԻՔՆԵՐ

Սեպտեմբերի 21-ին իր աշխատանքներն է սկսելու Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXII համագումարը: Համագումարը կքննարկի ՍՄԿՊ նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերը, ՀԿՊ Կենտկոմի և Վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունները, կընտրի ՀԿՊ Կենտկոմի ու Վերստուգիչ հանձնաժողովի նոր կազմ ու ՍՄԿՊ XXII համագումարի պատգամավորներ: Հանրագումարի բերելով հաշվետու ժամանակաշրջանում պարտիական կազմակերպությունների կատարած աշխատանքի արդյունքները, համագումարը կոնկրետ միջոցառումներ կնշի այն հոյակապ խնդիրների կենսագործման համար, որոնք անմիջականորեն բխում են կոմունիզմի կառուցման պատմական մեծ Ծրագրից:

ՀԿՊ XXI համագումարից հետո անցած մեկ ու կես տարին Հայաստանի պարտիական կազմակերպությունների, սոցիալիստական արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատողների, մեր ինտելիգենցիայի համար եղել է բեղմնավոր, ստեղծագործ աշխատանքի ժամանակաշրջան:

Իրենց գործունեության հիմքում դնելով ՍՄԿՊ XXI համագումարի և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշումները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները ՀԿՊ Կենտկոմի անմիջական ղեկավարությամբ հաշվետու ժամանակաշրջանում մեծ աշխատանք են կատարել ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զարգացման, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման, մասսաների մարքսիստական-լենինյան դաստիարակության, կոմունիստական աշխատանքի ու կենցաղավարության ձևերի արմատավորման և մյուս բնագավառներում:

Ռեսպուբլիկայում շարք են մտել նորանոր գործարաններ, էլեկտրակայաններ ու ֆաբրիկաներ: Դրա հետ միասին ընդլայնվել ու նորագույն կատարելագործված տեխնիկայով զինվել են գործող շատ ձեռնարկություններ, որոնք զգալի չափով ավելացրել են արտադրանքի թողարկումը: Արդյունաբերության մեջ տեղի ունեցած քանակական փոփոխություններին զուգընթաց տեղի են ունեցել նաև որակական փոփոխություններ: Լեռնահանքային արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի հետ մեկտեղ արագորեն զարգացել են արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ քիմիական, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական, գործիքաշինական, ռադիո-էլեկտրոնային և այլն: Թողարկվել է արդյունաբերական ավելի քան 150 նոր տեսակի արտադրանք:

Արդյունաբերության հետ մեկտեղ լայնորեն զարգացել է գիտահետազոտական և կոնստրուկտորական բազան: Ստեղծված գիտահետազոտական ինստիտուտները և հատուկ կոնստրուկտորական բյուրոները նշանակալից աշխատանք են կատարել արդյունաբերության տեխնիկական առաջադիմությունն արագացնելու ուղղությամբ: Հազարավոր բանվորներ, ինժեներներ ու տեխնիկներ իրենց ռացիոնալիզատորական առաջարկներով մեծապես նպաստել են



արդյունաբերական արտադրանքի աճմանը: Միայն 1960 թվականին 15 հազարից ավելի ռացիոնալիզատորական առաջարկներ են արված, որոնցից 9400-ը ներդրվել են արտադրության մեջ:

Ներքին ճարուստ ռեզերվները գործի դնելու և բանվորների ու ինժեներատեխնիկական անձնակազմի ուժերը մոբիլիզացնելու շնորհիվ պարտիական կազմակերպությունները հասան այն բանին, որ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը յոթնամյակի երկրորդ տարվա՝ 1960 թվականի արտադրանքի պլանը կատարեց 102,3 տոկոսով: Նախորդ՝ 1959 թվականի համեմատությամբ, 1960 թվականին արդյունաբերության արտադրության ծավալը աճեց 12 տոկոսով, պլանով նախատեսված 10,5 տոկոսի փոխարեն: Արդյունաբերության հաջողությունները նշանակալից են նաև ընթացիկ տարվա առաջին կիսամյակում: Արդյունաբերության ընդհանուր արտադրության առաջին կիսամյակի պլանը կատարված է 102,7 տոկոսով: Այդ նույն ժամանակամիջոցում ավելի մեծ չափով է աճել արտադրության առանձին ճյուղերի արտադրանքը: Այսպես, հաստոցաշինության արտադրանքն աճել է 56, սարքաշինությանը՝ 44, քիմիականինը՝ 11, շինանյութերի արդյունաբերությանը՝ 16 տոկոսով:

Իրենց կազմակերպված ու հայրենանվեր աշխատանքի շնորհիվ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները յոթնամյակի առաջին երկու և կես տարում պլանից դուրս երկրին տվել են գրեթե 75 միլիոն ռուբլու արտադրանք: Նրանք յոթնամյակի առաջին երկու տարվա համախառն արտադրանքի ծավալը, 1958 թվականի մակարդակի համեմատությամբ, պլանով նախատեսված 17,5 տոկոսի փոխարեն ավելացրել են 24,2 տոկոսով:

Արդյունաբերության ասպարեզում հաջողությունները ավելի նշանակալից կլինեին, եթե ժողտնտխորհը, պարտիայի մի շարք քաղկոմներ, շրջկոմներ, սկզբնական պարտիական կազմակերպություններ և տնտեսական ղեկավարներ ապահովեին արտադրական բոլոր ձեռնարկությունների համաչափ ու կազմակերպված աշխատանքը և ժամանակին վերացնեին այն էական թերությունները, որոնք գոյություն ունեն ոչ քիչ թվով ձեռնարկություններում: Անհանդուրժելի է, երբ արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 20 տոկոսը չի կատարել համախառն արտադրանքի թողարկման 1961 թ. առաջին կիսամյակի պլանը:

Լենինականի տեքստիլ կոմբինատի, միկրոէլեկտրաշարժիչների գործարանի, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի և մի քանի այլ ձեռնարկությունների ղեկավարներ վատ են օգտագործում եղած ռեզերվները, չեն ապահովում ըստ ասորտիմենտի պետական պլանի կատարումը, հանդուրժում են խոտանը, դանդաղ են արմատավորում առաջավոր փորձն ու նորագույն տեխնիկայի օգտագործումը:

Ժողտնտխորհի, պարտիայի քաղկոմների, շրջկոմների, սկզբնական պարտկազմակերպությունների, շրջսովետների գործկոմների, տնտեսական ղեկավարների ու արհմիութենական կազմակերպությունների խնդիրն է՝ համապատասխան միջոցառումներ իրականացնել և կարճ ժամանակում վերացնել արդյունաբերության բնագավառում եղած թերությունները, ապահովելով բոլոր ձեռնարկությունների համաչափ ու կազմակերպված աշխատանքը:

ՀԿՊ XXI համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում որոշակի աշխատանք է կատարված նաև շինարարության ասպարեզում: Պարտիական կազմակերպություններն ամեն կերպ ջանացել են աշխատավորներին ապահովել նոր ու բարեկարգ բնակարաններով: Պարտիական ու սովետական կազմակեր-

պությունների օգնությամբ շինարարներն այս տարի որոշ չափով բարելավել են
իրենց աշխատանքը: Կապիտալ շինարարության յոթամսյա պլանը կատարվել է
92,6 միլիոն ռուբլով, կամ 20,5 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա նույն
ժամանակաշրջանում: Այդ թվում՝ կառուցվել ու շահագործման են հանձնվել
98,6 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որը 1960 թվականի
համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ 19 հազար քառակու-
սի մետրով ավելի է: Բայց, չնայած դրան, 1961 թվականի շինարարության
պետական պլանը անբավարար է կատարվում: Շինարարության մինիստրու-
թյան, ժողտնտխորհի շինարարության վարչության, Հայհիդրոէներգոշինի աշ-
խատանքներում կան լուրջ թերություններ: Նրանք ինչպես հարկն է չեն կազմա-
կերպում շինարարության աշխատանքը, անբավարար են օգտագործում նյութա-
տեխնիկական բազան: Անհանդուրժելի է, երբ առանձին շինտրեստներ շռայ-
լում են շինանյութը, սիստեմատիկաբար թերակատարում են պլանները և
շատ շենքեր շահագործման են հանձնում լուրջ թերություններով:

Պարտիական, սովետական, տնտեսական օրգանները, շինարարական
տրեստների պարտիական ու արհմիութենական կազմակերպությունները պետք
է արմատական միջոցառումներ անցկացնեն ապահովելու արդյունաբերական,
բնակարանային, դպրոցական, հիվանդանոցային և մյուս շինարարությունների
պետական պլանների անվերապահ կատարումը:

Իրագործելով սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման վերա-
բերյալ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումների և պարտիայի XX և XXI
համագումարների որոշումները, ռեսպուբլիկայի պարտիական, սովետական
կազմակերպությունները, հողային օրգանները որոշակիորեն բարելավել են
կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարությունը և, տեղական պայ-
մաններից ելնելով, մի շարք արմատական միջոցառումներ են անցկացրել գյու-
ղատնտեսության վերելքն ապահովելու համար: Կատարված հետևողական աշ-
խատանքի շնորհիվ աճել է անասունների գլխաքանակը, ընդարձակվել են
պտղատու այգիները, կերային կուլտուրաների, առանձնապես եգիպտացորենի
ցանքատարածությունները: 1960 թվականին և 1961 թվականի գարնանը տնկվել
են խաղողի 4442 հեկտար և մրգատու ծառերի 3669 հեկտար նոր այգիներ:
Գյուղի աշխատավորներն իրենց հիմնական ուշադրությունը բևեռել են գյուղա-
տնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերա-
տվության բարձրացման վրա և կարողացել են ավելացնել գյուղատնտեսական
մթերքների արտադրությունը, որի շնորհիվ 1960 թվականին ռեսպուբլիկան
ժամկետից շուտ կատարեց պետությանը բամբակի, մսի, կաթի և շաքարի
ճակնդեղի վաճառքի պլանը:

Շատ ու շատ անվանի կոլտնտեսականներ, արտադրության մեջ արմատա-
վորելով գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, լուրջ հաջողություն-
ների հասան կաթի, բրդի, ձվի, խաղողի, բամբակի և գյուղատնտեսական մյուս
մթերքների արտադրության գործում, դրսևորելով իրենց որպես փարոսներ:

Բայց, չնայած այդ բոլորին, գյուղատնտեսության ասպարեզում դեռևս
կան լուրջ թերություններ, որոնց համար ռեսպուբլիկայի պարտիական ու սո-
վետական օրգանները իրավացիորեն սուր քննադատության ենթարկեցին ՍՄԿՊ
Կենտկոմի Հունվարյան պլենումում և Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյու-
ղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում: Բանն այն է, որ մի
շարք շրջաններում պարտիական կազմակերպությունները ինչպես հարկն է չեն



ղեկավարում կոլտնտեսություններին, վատ են զբաղվում կադրերի ընտրության,
դաստիարակության ու պատասխանատվության բարձրացման գործով, հան-
դուրժողական վերաբերմունք են ցուցաբերում աշխատանքային դրսևորման
առանձին երևույթների նկատմամբ և արմատական միջոցառումների չեն դի-
մում գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանային առաջադրանք-
ներն ու սոցիալիստական պարտավորությունները ժամանակին կատարելու
համար: Ավելին, կերի անհրաժեշտ պաշար չկուտակելու հետևանքով անցած
տարի տեղի ունեցավ մեծ թվով ոչխարների անկում, իսկ առանձին կոլտնտե-
սություններում պակասեց կաթի արտադրությունը:

Հայաստանի պարտիական ու սովետական կազմակերպությունները, գյուղի
բոլոր աշխատողները առաջնորդվելով ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի
որոշումներով և ընկեր Ն. Ս. Խրուշչովի ցուցումներով, կոնկրետ միջոցառում-
ներ մշակեցին գյուղատնտեսության մեջ եղած թերությունները վերացնելու
և սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու համար:
Ծավալված հետևողական աշխատանքի շնորհիվ գերակատարվեց 1961 թվակա-
նի գարնանացանի պլանը, զգալիորեն ավելացավ հացահատիկի, եգիպտացո-
րենի ցանքատարածությունները:

Չնայած այս տարվա անբարենպաստ կլիմայական պայմաններին, ռես-
պուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պարտիական կազմակերպու-
թյունների ամենօրյա օգնությամբ լարված պայքար են տանում յոթնամյակի
երրորդ տարվա պլանային առաջադրանքները և ՍՄԿՊ XXII համագումարի
պատվին ծավալված մրցությունում ստանձնած պարտավորությունները պատ-
վով կատարելու համար: Նրանք 1961 թվականի անցած յոթ ամսվա ընթացքում,
1960 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, պետությանն
ավելի են վաճառել կաթ՝ 96 հազար, միս՝ 8250, բուրդ՝ 2000 ցենտներ, ձու՝
4 միլիոն 400 հազար հատ: Բացի այդ կոլտնտեսություններում ու սովխոզնե-
րում ավելացել է անասունների գլխաքանակը, ընդ որում կովերի գլխաքանակն
ավելացել է 9 հազարով, ոչխարներինը և այծերինը՝ 122 հազարով:

Ռեսպուբլիկայի պարտկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝
բոլոր ուժերը մոբիլիզացնել այս տարվա անբարենպաստ կլիմայական պայ-
մանների հետևանքով առաջացած դժվարությունները հաղթահարելու, անա-
սունների համար անհրաժեշտ չափով կեր կուտակելու, բերքահավաքն անկո-
րուստ անցկացնելու և անթերի կատարելու գյուղատնտեսական մթերքների
արտադրության ու վաճառքի պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական
պարտավորությունները:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները վերջին երկու տա-
րում զգալի աշխատանք են կատարել կուլտուրական շինարարության բնագա-
վառում: Ռեսպուբլիկայի քաղաքներում, բանվորական ավաններում ու գյու-
ղերում, նախորդ տարիների համեմատությամբ, զգալիորեն ավելացել է մաս-
սայական դպրոցներում սովորողների թիվը, ուժեղացել է ուսման կապը
կյանքի հետ: Որոշակի բարելավվում է նկատվում բարձրագույն ուսումնական
հաստատությունների աշխատանքում: Այստեղ ուսանողությանը տրվող կոնկ-
րետ գիտելիքները առնչվում են կոմունիստական շինարարության պրակտի-
կայի հետ, մասնագիտական բուհերի ուսանողները մասնակցում են արտա-
դրական աշխատանքներին, որը նպաստում է նրանցից որակյալ կադրերի
պատրաստմանը: Սակայն չի կարելի չնշել, որ շատ դպրոցներում և մի շարք

բուհերում դեռևս ցածր է ուսման որակը, չի ստեղծված ուսումնա-արտադրա-
կան անհրաժեշտ բազա, առանձին ֆակուլտետներում անբավարար է կազմա-
կերպված ուսանողության կոմունիստական դաստիարակության գործը:

Պարտիական կազմակերպությունները, Հայկական ՍՍՌ Լուսավորության
մինիստրությունը և Բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնա-
կան հաստատությունների կոմիտեն պետք է բոլոր միջոցները ձեռք առնեն
ուսուցման գործում եղած թերությունները վերացնելու և երկրի համար բարձր-
որակ կադրեր պատրաստելու համար:

Լուրջ հաջողություններ ունենք արվեստի, գրականության ու գիտության
զարգացման գործում: Ամփոփելով այդ բնագավառներում կատարված աշխա-
տանքի գոհացուցիչ արդյունքները, ՀԿՊ XXII համագումարը կոնկրետ միջոց-
առումներ կնշի սովետահայ արվեստի ու գրականության, մեծ նվաճումների
հասած մեր գիտության հետագա առավել զարգացման համար:

Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակեր-
պությունների կատարած աշխատանքի փայլուն հանրագումարի մեջ աչքի ընկ-
նող տեղ է գրավում ժողովրդի նյութական բարեկեցության աճը: Վերջին երկու
տարում նշանակալից չափով բարձրացել են բանվորների, կոլտնտեսականնե-
րի, ծառայողների ռեալ եկամուտները, որոշակիորեն բարելավվել են նրանց
բնակարանային ու բուժսպասարկման պայմանները, ընդարձակվել է հասա-
րակական սննդի ու առևտրի ցանցը, աճել է լայն սպառման ապրանքների ու
սննդամթերքների վաճառքը և այլն: Սակայն այդ ուղղությամբ դեռևս պետք է
խոշոր աշխատանք կատարել և ապահովել ժողովրդի նյութական բարեկեցու-
թյան բարձրացման այն մեծ նախագծումների կենսագործումը, որոնք տրված
են պարտիայի նոր Ծրագրի նախագծում:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի, նրա լենինյան
Կենտրոնական Կոմիտեի ամենօրյա ղեկավարությամբ ու օգնությամբ Հայաս-
տանի պարտիական կազմակերպությունները դարձել են ավելի մարտունակ ու
ձեռներեց: Տնտեսության կազմակերպման ու ղեկավարման հետ միասին
նրանք ուժեղացրել են մասսաների կոմունիստական դաստիարակությունը, կո-
մունիստներին, մեր բոլոր կադրերին զինել են մարքսիզմ-լենինիզմով. ան-
հաշտ պայքար են մղել բուրժուական ռեակցիոն գաղափարախոսությունների
դեմ, ժամանակին հակահարված են տվել ազգային սահմանափակվածության
ու այն բոլոր երևույթներին, որոնք խորթ են մեր պարտիայի ու ժողովրդի
ոգուն:

Հայ ժողովրդի կյանքում մեծագույն իրադարձություն էր Հայաստանում
սովետական կարգերի հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիա-
յի կազմավորման 40-ամյակի տոնակատարությունը: Հայ ժողովրդի տոնին
առավել ջերմություն հաղորդեց ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար և ՍՍՌՄ
Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովի մասնակցությունը: Տոնա-
կատարությանը մասնակցեցին սովետական ռեսպուբլիկաների աշխատավոր-
ների ներկայացուցիչները, ինչպես նաև արտասահմանյան երկրներում ցրված
մեր հայ աշխատավորների ներկայացուցիչները:

Սովետական Հայաստանի տոնը վերածվեց ՍՍՌՄ ժողովուրդների անսա-
սան բարեկամության մի վառ ցույցի: Հանրագումարի բերելով քառասուն տար-
վա փայլուն նվաճումները, հայ ժողովուրդը միահամուռ կերպով արտահայտեց
իր անսահման նվիրվածությունը Կոմունիստական մեծ պարտիային, նրա լե-



նինյան Կենտրոնական Կոմիտեին, որի ջերմ հոգատարությունը նա զգում է
ամեն օր:

Կոմունիզմի համար մղվող պայքարում հայ ժողովրդի ներդրումը բարձր
գնահատեց Ն. Ս. Խրուշչովը: «Սովետական Հայաստանը,—ասաց Ն. Ս.
Խրուշչովը,—արժանավայել տեղ է գրավում մեր Հայրենիքի ռեսպուբլիկաների
համատեղության մեջ: Աշխատասեր ու տաղանդավոր հայ ժողովուրդը նշանա-
կալի ավանդ է մուծում կոմունիստական շինարարության մեծ գործում»:

ՀԿՊ XXII համագումարը տեղի է ունենում մեր Հայրենիքի կյանքում նշա-
նակալի օրերին: Նոր էր, որ ամբողջ աշխարհը ալեկոծվեց սովետական խի-
զախ բազեների՝ Յուրի Գագարինի և Գերման Տիտովի տիեզերքում կատարած
անօրինակ թռիչքներով:

Հրապարակվեց մեր դարաշրջանի մարքսիստական-լենինյան մեծագույն
փաստաթուղթը՝ Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծը: Ինչպես ամ-
բողջ սովետական ժողովուրդը, այնպես էլ Հայաստանի աշխատավորները ջերմ-
որեն ընդունեցին կոմունիզմի կառուցման մեծ պլանը և աննախընթաց ակ-
տիվությամբ մասնակցում են նրա քննարկմանը:

Ռեսպուբլիկայի վերջերս ավարտված պարտիական կոնֆերանսները,
սկզբնական կազմակերպությունների աշխատավորների ժողովները միահա-
մուռ կերպով հավանություն տվին պարտիայի Ծրագրի և Կանոնադրության նա-
խագծերին և նշեցին իրենց կոնկրետ խնդիրները կոմունիզմի կառուցման հա-
մար մղվող պայքարում:

Ռեսպուբլիկայում ամենուրեք տիրում է քաղաքական ու աշխատանքային
հսկայական վերելք: Նոր, հուժկու թափով ծավալվել է սոցիալիստական մրցու-
թյունը ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի: Հայաստանի արդյունաբերական
բազմաթիվ ձեռնարկությունների կոլեկտիվները, կոլտնտեսությունների և սով-
խոզների աշխատավորները պատվով կատարում են իրենց ստանձնած սոցիա-
լիստական պարտավորությունները:

Հայաստանի աշխատավորները ջերմորեն արձագանքեցին Կոմունիստական
պարտիայի և Սովետական կառավարության այն միջոցառումներին, որոնց
նպատակն է էլ ավելի ամրապնդել ՍՍՌՄ պաշտպանությունը, սանձահարել
մոլի ագրեսորներին և ապահովել ընդհանուր խաղաղությունը: Հայ ժողովուրդը
միահամուռ կերպով պաշտպանում է Սովետական կառավարության արտաքին
քաղաքականությունը և իր ամբողջ ուժն ու եռանդը նվիրաբերում է մեր երկրի
հզորության, կոմունիստական հաղթական շինարարության գործին:

Կուռ ու միասնական շարքերով, ՍՄԿՊ Լենինյան Կենտկոմի շուրջը համա-
խմբված՝ Հայաստանի կոմունիստները գալիս են իրենց համագումարին, որն
ըստ արժանվույն գնահատելով հաշվետու ժամանակաշրջանում կատարված
բեղմնավոր աշխատանքը, կմշակի կարևոր միջոցառումներ այն հոյակապ
խնդիրների իրականացման համար, որոնք բխում են պարտիայի՝ կոմունիզմի
կառուցման պատմական Ծրագրից:

---

## ՍՄԿՊ ՆՈՐ ԾՐԱԳՐԻ ԵՎ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՆԱԽԱՀԱՄԱԳՈՒՄԱՐՅԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄ

# ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ԾՐԱԳՐԱՅԻՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ

Դասակարգային հասարակության պատմությունը տեսել է պետության ղեկի մոտ կանգնած քաղաքական պարտիաների ծրագրային շատ փաստաթղթեր։ Բայց դրանցից ո՛չ մեկը և ո՛չ մի ժամանակ չի որոշել երկրների փոխհարաբերությունների բնույթը՝ հաշվի առնելով բոլոր ժողովուրդների, մարդկության բացարձակ մեծամասնության կենսական շահերը։ Միայն կոմունիստները, որոնք իրենց նվիրաբերել են միջազգային պրոլետարիատի և բոլոր աշխատավորների շահերին ծառայելու գործին, կարող էին ՍՄԿՊ Ծրագրի նոր նախագծով միջազգային կյանքի ոլորտում իրենց պրակտիկ գործունեության հիմնական խնդիրը դարձնել պայքարը խաղաղ գոյակցության, պատերազմների վերացման և երկրի վրա հավիտենական խաղաղության հաստատման համար։

***

Լինում են իրադարձություններ, որոնք խոր հետք են թողնում ժողովուրդների և պետությունների կյանքում, երկար ժամանակ կանխորոշում են հասարակական զարգացման ընթացքը, նրա հիմնական ուղղությունը։ Դարակազմիկ բնույթի այդպիսի իրադարձություն կդառնա մեր պարտիայի առաջիկա համագումարը, որը կքննարկի և կհաստատի տեսանելի ապագայի համար իր պրակտիկ գործունեության նոր Ծրագիրը։ Եվ ահա այն պատճառով, որ նոր Ծրագիրը շոշափելի է դարձնում սովետական ժողովրդի և բոլոր երկրների պրոլետարների վերջնական նպատակը, ամբողջ մարդկության ուշադրությունն այժմ գամված է պատմական այդ փաստաթղթին։

Կոմունիզմի բարեկամներն ու թշնամիները հակառակ դիրքերից են խոսում դարաշրջանի ուղեցույց փաստաթղթի մասին։ Ամբողջ աշխարհի աշխատավորները, բարի կամքի և լուսավոր երազանքի տեր բոլոր մարդիկ այն կարդում են լուսափայլ վառվռա նկատմամբ հավատով և հույսով։ Եվ ընդհակառակը, մեր պարտիայի Ծրագրի նախագիծը առաջացնում է կապիտալի քաղաքական լիդերների և հոգևոր պարագլուխների հուսահատ չարությունը և կատաղի զայրույթը։ ՍՄԿՊ Ծրագրի նախագիծը դառնում է հասարակական առաջընթացի գաղափարին, բոլոր մարդկանց սոցիալական անհավասարության ու ճնշման բոլոր ձևերից ազատելու գաղափարին տարբեր դասակարգերի, քաղաքական պարտիաների, նրանց լիդերների ու գաղափարախոսների բնորոշ փորձաքար։ Ծրագրի նախագծի այն միտքը, որ «Կոմունիզմը կատարում է բոլոր մարդկանց սոցիալական անհավասարությունից, ճնշման ու շահագործման բոլոր ձևերից, պատերազմի սարսափներից փրկելու պատմական



միսիան և աշխարհում հաստատում է Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն ու Երջանկություն բոլոր ժողովուրդների համար», հանդիսանում է ժամանակի դրոշը։

Խաղաղ գոյակցության և ընդհանուր խաղաղության համար մղվող պայքարի պրոբլեմը ՍՄԿՊ նոր Ծրագրի կենտրոնական պրոբլեմներից մեկն է։ Եվ դա բնական է։ Որովհետև, ինչպես ասված է ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում, «Սոցիալիստական և կապիտալիստական պետությունների խաղաղ գոյակցությունը մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտություն է»։

Կարելի է անսխալ կերպով պնդել, որ դա բոլոր ժամանակների իշխող դասակարգերի քաղաքական պարտիաների պատմության մեջ ծրագրային առաջին փաստաթուղթն է, որտեղ խնդիր է դրվում վերացնել պատերազմները և ապահովել ժողովուրդների խաղաղ գոյակցությունը։ Պատմության մեջ չեն եղել և չէին կարող լինել համանման փաստաթղթեր։ Որովհետև պատմության մեջ չեն եղել ո՛չ համանման օբյեկտիվ պայմաններ, ո՛չ էլ պատերազմը կանխելու, հասարակության կյանքից այն բացառելու ընդունակ ուժեր։

Մինչսոցիալիստական դարաշրջաններում իշխող ոչ մի դասակարգ միջազգային քաղաքականության մեջ երբեք նպատակ չի ունեցել մարդկության կյանքից բացառելու պատերազմները։ Միայն արդի դարաշրջանում, երբ մարդկությունը բացում է իր բազմահատոր պատմության նոր գլուխը, երբ նրա կյանքում տեղի են ունենում պրոլետարիատի դասակարգային պայքարի վեհ գաղափարներով համակված ամենաշեշտակի փոփոխություններ, առաջին անգամ ռեալ է դառնում ժողովուրդների խաղաղ գոյակցության հնարավորության ապահովումը։ Հասարակական կյանքի այդ մեծագույն երևույթներից մեկի համար մարդկությունը պարտական է միջազգային բանվորական և կոմունիստական շարժմանը, կոմունիզմի տեսությանն ու պրակտիկային։

Կոմունիստները ազատագրում և բարգավաճում են բերել աշխարհի հսկայական մասի համար, որը և՛ բնակչության թվով, և՛ տերիտորիայով արդեն գերազանցում է այն մասը, որն զբաղեցնում են բուն իմպերիալիստական երկրները։ Կոմունիստներն ավելի քան մեկ միլիարդ մարդկանց ջանքերն ուղղել են խաղաղության վիթխարի պատվարի կառուցմանը, որի տերիտորիան կազմում է Եվրոպայի ու Ասիայի մայրցամաքների 35 միլիոն քառակուսի կիլոմետրից ավելին։ Հետագոտողների ուժերը և ուշադրությունը կենտրոնացնելով աշխարհի սոցիալիստական մասի տեխնիկական հրատապ պրոբլեմների լուծման վրա, կոմունիստները խաղաղասեր ժողովուրդներին տվեցին նյութական հզոր միջոցներ՝ իմպերիալիստական ագրեսիան սանձելու համար։ Առաջացել է լայնածավալ խաղաղության գոտի, որի մեջ սոցիալիստական երկրների հետ միասին մտնում է ոչ սոցիալիստական պետությունների մի մեծ խումբ, որոնք այս կամ այն պատճառով շահագրգռված չեն պատերազմների սանձազերծմամբ։

Իմպերիալիզմն անվերադարձ կերպով կորցրել է իշխանությունը մարդկության մեծամասնության նկատմամբ։ Նա դադարել է գերակշռող դեր խաղալ միջազգային հարաբերությունների մեջ։ ՍՄԿՊ Ծրագրի նախագծի թևավոր խոսքերով ասած, աշխարհի վրայով անցնում է մաքրող մի մեծ ամպրոպ, նշանավորելով մարդկության գարունը։ Մարդկության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, գլխավոր ուղղությունը և գլխավոր առանձ-

նահատակությունները որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը,
իմպերիալիզմի դեմ հասարակության սոցիալիստական վերակառուցման
համար պայքարող ուժերը։

Իմպերիալիզմի համաշխարհային դիրքերը խարխլվել են։ Բայց իմպե-
րիալիզմը խաղաղասեր չի դարձել։ Այսօր նա ավելի ագրեսիվ է, քան առաջին
և երկրորդ համաշխարհային պատերազմների նախօրյակին։ Այդ է վկայում
հակակոմունիզմի անխոհեմ քաղաքականության աճող ավանտյուրիզմը։ 1961
թվականի օգոստոսի 7-ին հանդես գալով ռադիոյով և հեռուստատեսությամբ,
Ն. Ս. Խրուշչովը ընդգծեց, որ սոցիալիստական երկրների նկատմամբ ունեցած
դասակարգային ատելությունից կուրացած իմպերիալիստական որոշ գործիչ-
ներ հակակոմունիզմը հռչակում են իրենց արտաքին քաղաքականության հիմք։
«Բանն, ըստ երևույթին, այն է,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— որ առավել
ագրեսիվ իմպերիալիստական շրջանները կուզենային վիժեցնել կոմունիս-
տական հասարակարգի խաղաղ կառուցման պլանները։ Հենց կապիտալիզմն
է վախենում սոցիալական տարբեր կարգ ունեցող երկրների խաղաղ մրցու-
թյունից»։

Իմպերիալիզմը չի ուզում աշխարհն ընկալել այնպես, ինչպես նա կա, չի
ուզում հաշտվել այն բանի հետ, որ ուժերի հարաբերակցությունը էականորեն
փոխվում է հօգուտ սոցիալիզմի և խաղաղության։ Ժխտելով սոցիալիզմի և
կապիտալիզմի գոյակցության օրինաչափությունը, կոմունիզմը բնորոշելով
որպես «ռուսական փորձ», իմպերիալիզմը մերժում է խաղաղ գոյակցության
սկզբունքը և կրկին (արդեն քանի՜ անգամ) փորձում է իր միջազգային քա-
ղաքական պրակտիկայի ժանգոտած վահանի վրա բարձրացնել սոցիալիստա-
կան երկրներին «ետ վանելու» գաղափարը։ Իսկ դա անհրաժեշտ է դարձնում
անշեղորեն ուժեղացնելու սոցիալիզմի հակաիմպերիալիստական, հակապա-
տերազմական պայքարը, վճռականորեն և հետևողականորեն կենսագործելու
խաղաղ գոյակցության սկզբունքը։

Անտագոնիստական հակասությունների լուծման հիմնական մեթոդը, հա-
մաշխարհային նոր պատերազմի նախապատրաստման և սանձազերծման
ուղղությամբ գործող ուժերին սանձելու հիմնական մեթոդը կոմունիստների
համար եղել է և մնում է պայքարը։ Կոմունիստները երբեք չեն տարակուսել,
որ միայն պայքարի միջոցով կարելի է սանձել ագրեսիվ ուժերին, պարտա-
դրել նրանց խաղաղություն։ Ուստի նրանք խաղաղ գոյակցության լենինյան
սկզբունքը միշտ հասկացել են որպես միջազգային մասշտաբով կապիտա-
լիզմի դեմ սոցիալիզմի դասակարգային պայքարի սպեցիֆիկ ձև։ «Հետևողա-
կանորեն կենսագործելով խաղաղ գոյակցության գիծը,— ասվում է Ծրագրի
նախագծում,— սոցիալիստական երկրները անշեղորեն ամրապնդում են հա-
մաշխարհային սոցիալիստական սիստեմի դիրքերը կապիտալիզմի հետ նրա
մրցության մեջ։ Խաղաղ գոյակցության քաղաքականությունը համապատաս-
խանում է ամբողջ մարդկության կենսական շահերին, բացառությամբ խոշոր
մոնոպոլիաների տերերի և ռազմամոլների»։

Ֆինանսական կապիտալի տերերը, իրենց ձեռքում կենտրոնացնելով իմ-
պերիալիստական երկրների քաղաքական իշխանությունը և տնտեսական
կյանքի լծակները, մարդկությանը սպառնում են ջերմամիջուկային պատե-
րազմով, որը կարող է չտեսնված ավերածություններ պատճառել մարդկու-
թյանը։ Չէ՞ որ հենց ամերիկյան մասնագետների խոստովանությամբ 1952



թվականից աշխարհը թևակոխել է մի այնպիսի ժամանակաշրջան, երբ մի-
ջուկային ռումբը ո՛չ թե հազար և 10 հազար անգամ, այլ միլիոն կամ 10
միլիոն անգամ ավելի հզոր է դարձել ֆուգասային ռումբերից, այսինքն՝ հա-
զար անգամ ավելի հզոր, քան 1945 թվականի օգոստոսի 6-ին և 8-ին Հիրո-
սիմայի և Նագասակիի վրա նետված ռումբերը։

Խաղաղ գոյակցության սկզբունքը ենթադրում է ինչպես ագրեսիվ տեն-
դենցի վերացումը իմպերիալիզմի քաղաքականության մեջ, այնպես էլ հա-
մագործակցությունը կապիտալիստական երկրների հետ հօգուտ միջազգային
անվտանգության շահերի։ 1961 թվականի օգոստոսի 11-ին սովետա-ռումի-
նական բարեկամության միտինգում արտասանած ճառում Ն. Ս. Խրուշչովը
արևմտյան տերություններին կրկին հաստատակամորեն կոչ արեց քաղաքա-
կանության մեջ ելնել ռեալիզմի դիրքերից, դադարեցնել ռազմական հիստե-
րիան, որն Արևմուտքում բորբոքվում է Գերմանիայի հետ հաշտության պայ-
մանագիր ստորագրելու անհրաժեշտության մասին սոցիալիստական երկրների
հայտարարության կապակցությամբ, և համաձայնության գալ եվրոպական
ու համաշխարհային քաղաքականության այդ ամենահրատապ հարցի լուծման
շուրջը։ «Գերմանիայի հետ պայմանագրի կնքումը,— ասաց Ն. Ս. Խրուշչո-
վը,— օգտակար կլիներ նրա բոլոր մասնակիցներին, բոլորին, ովքեր իրոք
ձգտում են խաղաղության և իրենց քաղաքականությունը կառուցում են, ել-
նելով խաղաղության շահերից։ Սովետական Միությունը այդ հարցի առթիվ
ներկայացրել է ծավալուն առաջարկներ։ Դրա հետ մեկտեղ մենք պատրաստ
ենք լսելու և քննարկելու արևմտյան երկրների ամեն մի կոնստրուկտիվ առա-
ջարկ։ Մենք արևմտյան տերություններին ասում ենք՝ մեր դիրքավորման մեջ
մի փնտրեք այն, ինչ նրանում չկա։ Սովետական կառավարությունը չի ձգտում
վնաս հասցնել որևէ մեկի շահերին, նա ոչ ոքի չի սպառնում։ Մենք ելնում
ենք ռեալ փաստերից և ցանկանում ենք բոլոր երկրների հարաբերությունները
համապատասխանեցնել այն բանին, ինչ գոյություն ունի»։

Այսօր, երբ մարդկությունը կատարելով գիտա-տեխնիկական և սոցիա-
լական վիթխարի ռևոլյուցիա՝ ազատագրվում է բնության և հասարակական
կյանքի տարերային կործանարար ուժերի մշտնջենական տիրապետությունից,
կապիտալը սպառնում է բնաջնջող պատերազմով։ Բնորոշ կերպարանափո-
խությո՜ւն։ Այն դասակարգը, որը մի ժամանակ Ազատություն, Հավասարու-
թյուն և Եղբայրություն բառերն արտասանելով գրոհում էր ֆեոդալիզմի ամ-
րոցը, դարձել է արդիականության ամենառեակցիոն ուժը։ Այժմ նա այրում է
այն ամենը, ինչ պաշտում էր և սկսել է պաշտել այն ամենը, ինչ այրում էր։

Այդ պատճառով, բուրժուական դեմոկրատիայի, բուրժուական ազատու-
թյունների և բուրժուական հումանիզմի փլատակների վրայով երկրագնդում
հաղթականորեն քայլում է պրոլետարական Դեմոկրատիան, պրոլետարական
Ազատությունը և պրոլետարական Հումանիզմը։ Եվ այդ ամենը իրենց արտա-
հայտությունն են գտնում արդիականության մեծ սկզբունքի՝ խաղաղ գոյակ-
ցության սկզբունքի մեջ, որը մարմնավորում է մարդկային հասարակության
զարգացման օբյեկտիվ պահանջը։

Հակամիլիտարիստական պայքարում ավելացնելով իրենց ջանքերը, կո-
մունիստները ձգտում են լիովին դադարեցնել «սառը պատերազմը», ցրել
ռազմական բլոկները, վերացնել ռազմական բազաները, միջազգային վերա-
հսկողության ներքո հասնել ընդհանուր և լրիվ զինաթափման, միջազգային

վիճելի հարցերը լուծել բանակցությունների միջոցով, պահանջում են հարգել պետությունների իրավահավասարությունը, նրանց տերիտորիալ ամբողջականությունը, անկախությունն ու սուվերենությունը, չմիջամտել միմյանց ներքին գործերին, լայնորեն զարգացնել ժողովուրդների առևտրական, կուլտուրական, գիտական կապերը։

Նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստման և սանձազերծման դեմ կոմունիստների պայքարը իր վրա է բևեռում ամբողջ մարդկության ուշադրությունը։ Պատերազմի և խաղաղության պրոբլեմի լուծման շուրջը բորբոքվում է տիտանական ճակատամարտ։ Կրակային գծի երկու կողմերում հավաքվում են ուժեր, որոնք հակադիր շահագրգռվածություն ունեն մարդկության գոյության ամենահրատապ հարցի լուծման մեջ։ Գնալով ավելի պակասում է անտարբերների թիվը՝ ավելի են շատանում խաղաղության եռանդուն պաշտպանները։ Ավելի իմաստուն է դառնում նրանց միտքը, ավելի սրատես՝ աչքերը։ Ավելի հզոր է դառնում նրանց ձայնը, ավելի ամուր նրանց կամքը և հստակ՝ գործողությունները։ Ավելի է մեծանում նրանց դերը երկու աշխարհների պատմական մենամարտում։

Մարդկության համար այս մեծ փորձությունների ժամին միջազգային կոմունիստական շարժման առաջավոր ջոկատը՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիան, նորից խիզախորեն և հանդիսավոր կերպով հայտարարեց իր հաստատ վճռականությունը՝ կառուցելու նոր աշխարհ, «ուր ոչ ստրուկ կա, ոչ դժգոհ», ուր չեն լինի թշնամանք ու պատերազմներ ժողովուրդների միջև, ուր, Ա. Մ. Գորկու խոսքերով ասած, կբացվի «երկրի հոյակապ պատկերը, որպես ազատ մարդկության աշխատանքով նրբորեն հղկված վիթխարի զմրուխտ»։

Բ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԱՆԴԱՍԱԿԱՐԳ ՀԱՍԱՐԱԿԱՐԳ Է ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԻՋՈՑՆԵՐԻ ՄԻԱՍՆԱԿԱՆ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՄԲ, ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԱՆԴԱՄՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԼԻԱԿԱՏԱՐ ՀԱՎԱՍԱՐՈՒԹՅԱՄԲ, ՈՐՏԵՂ ՄԱՐԴԿԱՆՑ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՏ ՄԵԿՏԵՂ ՇԱՐՈՒՆԱԿ ԶԱՐԳԱՑՈՂ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՀԻՄԱՆ ՎՐԱ ԿԱՃԵՆ ՆԱԵՎ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺԵՐԸ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ԼԻԱՌԱՏ ԿՀՈՐԴԵՆ ԵՎ ԿԻՐԱԳՈՐԾՎԻ «ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻՑ՝ ԸՍՏ ԸՆԴՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻՆ՝ ԸՍՏ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԻ» ՄԵԾ ՍԿԶԲՈՒՆՔԸ։ ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԱԶԱՏ ԵՎ ԳԻՏԱԿԻՑ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ Է, ՈՐՏԵՂ ԿՀԱՍՏԱՏՎԻ ՀԱՆՐԱՅԻՆ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ, ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ԿԱՏԱՐՎՈՂ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲՈԼՈՐԻ ՀԱՄԱՐ ԿԴԱՌՆԱ ԱՌԱՋԻՆ ԿԵՆՍԱԿԱՆ ՊԱՀԱՆՋ, ԳԻՏԱԿՑՎԱԾ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆ, ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻ ԸՆԴՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿԳՈՐԾԱԴՐՎԵՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԱՐ ԱՌԱՎԵԼԱԳՈՒՅՆ ՕԳՏԱՎԵՏՈՒԹՅԱՄԲ։

**(ՍՄԿՊ ՆՈՐ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻՑ)**

# ՀԱՄԸՆԴՀԱՆՈՒՐ ԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ԾՐԱԳԻՐ

Մեր կյանքի բոլոր բնագավառներում վերջին տարիներս տեղի ունեցող սրընթաց վերելքի մեջ զգացվում էր, որ սոցիալիզմի երկիրը գտնվում է մեծ ընդվզումների շեմքին։ Դրանց պատկերն աստիճանաբար և ավելի ու ավելի վառ կերպով նշմարվում էր պարտիայի իմաստուն որոշումներում ու գործերում, որոնք այնքան մոտ ու հասկանալի են բոլոր մարդկանց։ Պարտիայի Կենտկոմի արդեն 1953—1955 թթ. պլենումները ծիածանի առաջին երանգները վրձնեցին այսօր ծնունդ առնող ապագայի հոյակապ կտավը։ Լենինյան պարտիայի XX և XXI համագումարներն իրենց խորիմաստ թեորիական որոշումներով ու պրակտիկ կանխագծումներով երիզեցին կոմունիզմի լուսավոր շինության ուրվագծերը։ Իսկ այսօր հմայված աշխարհի առջև արդեն կանգնեց ապագա հասարակության—կոմունիզմի պերճ պատկերը՝ վարպետորեն ամփոփված ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի մեծագույն փաստաթղթում՝ ՍՄԿՊ Ծրագրի նախագծում։

Դեռևս 1922 թվականին Ռուսաստանի լուրթ տափաստաններում որպես մարտակոչ հնչեց Լենինի ձայնը. «Անցել է այն ժամանակը, երբ պետք է մեծ խնդիրներ նկարագրել քաղաքականապես, և հասել է այն ժամանակը, երբ պետք է այդ խնդիրները գործնականապես իրականացնել» (Երկեր, հ. 33, էջ 66)։ Ծանր ժամանակներ էին, խնդիրները ոմանց թվում էին ցնորական։ Պետք էր դնել կոմունիզմի ստորին փուլի հիմքերը։

Քառասունչորս տարի անց հզոր, ծաղկող, համաշխարհային պրոգրեսի առջևից ընթացող Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության անեզր սահմանների վրա հնչում են պարտիայի լենինյան նոր Ծրագրի խոսքերը. «Կոմունիստական հասարակարգի կառուցումը դարձել է սովետական ժողովրդի անմիջական գործնական խնդիրը»։

Ահա՛ նրանք, այն մեծագույն ընդվզումները, որ սկսում ենք մենք՝ սովետական մարդիկս, անհանգիստ, անկրկնելի քսաներորդ դարի վաթսունական թվականներին։ Եվ դեպի վերահաս կոմունիզմի դարաշրջանը մեր երթի համար ասես բարի մաղթանք հնչեցին այնպիսի հրաշապատ, բայց ամենևին ո՛չ գերբնական «երկնային նշաններ», ինչպես «Վոստոկ—1» և «Վոստոկ—2» տիեզերանավերը՝ վաղվա տեխնիկայի այդ նախատիպերը։

Ծրագրի նախագիծը կարդալով սքանչանում ես այն ներդաշնակությամբ, որ առհասարակ հատուկ է գիտական կոմունիզմի զարգացող թեորիային և որն այնպիսի ռևոլյուցիոն կրքոտությամբ ու թեորիական տրամաբանությամբ կրկին հանդես եկավ դարաշրջանի այս փաստաթղթում։ Այստեղ մենք տեսնում ենք Մարքսի և Էնգելսի «Կոմունիզմի սկզբունքները», «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», «Գոթայի ծրագրի քննադատությունը», «Անտի-Դյու-

րինգ», Վ. Ի. Լենինի «Պետություն և ռևոլյուցիա» և մի շարք այլ աշխատու-
թյուններում շարադրված գաղափարների հետագա զարգացումը։ Այստեղ տես-
նում ենք ՍՄԿՊ XX և XXI համագումարների աչքի ընկնող թեորիական եզրա-
կացությունների, Ն. Ս. Խրուշչովի աշխատություններում զարգացված նոր
դրույթների ընդհանրացման, սոցիալիստական հարուստ իրականության ողջ
նվաճումների տեսական իմաստավորման մի հիանալի օրինակ։ Ծրագրի նա-
խագիծը գիտական կոմունիզմի հիմնական դրույթների զարգացման օրինաչափ
արդյունքն է, մեր երկրում սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի
մասին, սոցիալիզմը կոմունիզմին վերաճելու օրինաչափությունների, կոմու-
նիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ուղիների, կոլտնտեսային և
պետական սեփականության մերձեցման և միասնական կոմունիստական սե-
փականության մեջ նրանց միաձուլման, սոցիալիստական պետականությունը
կոմունիստական ինքնավարության վերաճելու, կոմունիստական դաստիարա-
կության խնդիրների և թեորիական այլ հետևությունների արդյունքը։ Սիստե-
մավորելով, ընդհանրացնելով և զարգացնելով հիշյալ դրույթները, Ծրագրի նա-
խագիծը տալիս է մեր երկրում կոմունիզմի կառուցման մի ամբողջական ուս-
մունք, սովետական ժողովրդի մարտական փորձված ավանգարդի՝ ՍՄԿՊ-ի
կողմից ղեկավարվող աշխատավորների գործողության մանրամասն մշակված
մի պլան։ Ամենագլխավորը Ծրագրի նախագծում մեր կարծիքով այն է, որ
պարտիան գործի ամբողջ հաջողությունը կապում է մասսաների փորձի և
ստեղծագործության հետ։ «Կոմունիզմի կառուցումը ժողովրդի ձեռքի, նրա
եռանդի, նրա բանականության գործն է։ Կոմունիզմի հաղթանակը կախված է
մարդկանցից, և կոմունիզմը մարդկանց համար է կառուցվում»։ Ծրագրի նա-
խագծի այս ոգեշունչ տողերը լենինյանների մեծ պարտիայի փիլիսոփայական
հավատո հանգանակն են հիրավի։ Եվ գալիք սերունդները, ըստ արժանվույն
գնահատելով մեր օրերի մարդկանց դարեդար անմոռաց գործերը, իրավունք
կունենան ասելու բանաստեղծի խոսքերով.

> Նա իր երկիրը անծայր ու անհուն,
> Իր բախտը և թե բախտը իր մանկանց,
> Ապավինել է ոչ թե աստծուն,
> Այլ իմաստության իր իսկ սեփական։
> Գույն նոր ձևով
>
> Գործի մեջ մտած՝
> Ի հայտ է բերել նա ուժերն իր նոր,
> Փորձառությունը իր հասունացած
> Ու պատանեկան ավյունը հզոր։

## I

Եթե փորձել բնութագրել Ծրագրի նախագծի առավել բնորոշ առանձ-
նահատկությունները, ապա կարելի է նշել հետևյալը։ Նախ, Ծրագրի նախա-
գիծը տալիս է գիտական կոմունիզմի ամենագլխավոր պրոբլեմների խոր թեո-
րիական մշակման և գործնական վերափոխումների կոնկրետ ծրագրի միաս-
նություն։ Մեր ժողովուրդը Ծրագրի նախագծում գտնում է ոչ միայն թեորիա-
կան այն հարցերի պատասխանները, թե ի՞նչ է կոմունիզմը, ինչպիսի՞ օրի-
նաչափություններ են անխուսափելի դարձնում նրա հաղթանակը, ինչո՞վ են
պայմանավորվում հասարակական կյանքի տարբեր կողմերի փոփոխություն-
ները կոմունիզմի ճամփաներին։ Կոմունիզմ կառուցողները նրա մեջ գտնում
են գործնական, կոնկրետ խնդիրներ, որոնց իրագործումը կհասցնի նրանց
նվիրական նպատակին։ Ահա այդ կոնկրետ խնդիրներից մի քանիսը։



Քսանամյա ժամանակաշրջանի վերջին հիմնականում կավարտվի երկրի
էլեկտրիֆիկացումը, էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը կհասնի
2700—3000 միլիարդ կիլովատ-ժամի, պողպատի տարեկան ձուլումը կհասնի
մոտ 250 միլիոն տոննայի։ Առաջին տասը տարում կիրագործվի արտադրու-
թյան բոլոր ճյուղերի կոմպլեքսային մեքենայացումը, իսկ երկրորդ տասնամ-
յակում՝ մասսայական չափերով կոմպլեքսային ավտոմատացումը։ Արտա-
դրության քիմիացումը, նոր սինթետիկ նյութերի, էներգիայի նոր տեսակների
լայն կիրառումը, արտադրության մեջ գիտության արմատավորումը էլեկտրի-
ֆիկացման ու ավտոմատացման հետ 20 տարում աշխատանքի արտադրողա-
կանությունը կբարձրացնեն չորս, չորս և կես անգամ։ Այսպիսով, գրեթե կրկ-
նակի գերազանցելով ամերիկյան մակարդակը, մեր հասարակությունը կհասնի
պատմության մեջ ամենաբարձր աշխատանքի արտադրողականության։ Գյու-
ղատնտեսության մեջ նախատեսվում է էլեկտրիֆիկացման, ամենալայն մե-
քենայացման, տնտեսության ինտենսիվացման, բոլոր շրջաններում հողագոր-
ծության ու անասնաբուծության գիտականորեն հիմնավորված սիստեմների,
ոռոգման զարգացման, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավոր-
ների կուլտուրական-տեխնիկական մակարդակի անշեղ բարձրացման բազա-
յի վրա 20 տարում արտադրանքի ծավալը ավելացնել երեք ու կես անգամ,
իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել հինգ-վեց անգամ։
Վսեմ և կոնկրետ են սովետական ժողովրդի նյութական բարեկեցության
վերելքի խնդիրները։ Քսան տարվա ընթացքում բանվորների ու ծառայողների
ռեալ եկամուտները (հասարակական ֆոնդերի հաշվառմամբ) կաճեն միջինը
մեկ աշխատողի հաշվով երեք—երեք և կես անգամ, իսկ կոլտնտեսականնե-
րինը՝ ավելի քան չորս անգամ։ Հասարակական ֆոնդերի միջոցով նյութական
ու կուլտուրական բարիքների ձրի բաշխումը գումարային արտահայտությամբ
քսանամյակի վերջին կհասնի բնակչության ռեալ եկամուտների ամբողջ գու-
մարի կեսին։ Միաժամանակ, բացի այն, ինչ այժմ անվճար բաշխվում է քա-
ղաքացիներին, ձրի կդառնա երեխաների խնամքը մանկական հիմնարկներում
ու գիշերօթիկ դպրոցներում, դեղորայքի ապահովումը, սանատորիական բու-
ժումը, բնակարանները, կոմունալ տրանսպորտը, կենցաղային սպասարկման
որոշ տեսակները, ձեռնարկություններում, հիմնարկներում և արտադրության
մեջ զբաղված կոլտնտեսականների համար կսկսվի սատիճանական անցում
ձրի սննդի։

Այո՛, անհնար է առանց հուզմունքի և երախտագիտության կարդալ պար-
տիայի այս կանխագծումների մասին։ Եվ յուրաքանչյուրին հասկանալի է դառ-
նում պարտիայի լոզունգի ամբողջ խորությունն ու հումանիզմը՝ «Ամեն ինչ
մարդու համար, հանուն մարդու բարօրության»։

Երկրորդ, ՍՄԿՊ Ծրագրի նախագիծն ունի այն առանձնահատկությունը,
որ դա կոմունիստական շինարարության համապարփակ ծրագիր է։ Պարտիան
ժողովրդի առջև բացում է հասարակական կյանքի բոլոր կողմերի զարգացման
հեռանկարը դեպի կոմունիզմ։ Դրանք և՛ կոմունիզմի նյութա-տեխնիկական բա-
զայի ստեղծման պրոբլեմներն են, և՛ տնտեսական, քաղաքական ու ազգային
հարաբերությունների վերափոխման, և՛ կոմունիստական դաստիարակության,
և՛ կոմունիզմի կառուցման դարաշրջանում պարտիայի դերի բարձրացման
պրոբլեմները։ Ծրագրի նախագծի համապարփակ բնույթն արտահայտվում է
նաև նրանում, որ այն լուսաբանում է ոչ միայն ներքին, այլև միջազգային

հարցերը, բացահայտելով համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորման ու զարգացման հիմնական օրինաչափությունները, հիմնավորելով նրա հաղթանակի անխուսափելիությունը կապիտալիստական աշխարհի դեմ։

Վերջապես, Ծրագրի նախագծի հիանալի առանձնահատկությունն է բազմահարուստ կյանքի՝ ինչպես սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու ներքին օրինաչափություններից, այնպես էլ միջազգային հարաբերություններից բխող թեորիական նոր հարցերի համարձակ առաջադրումն ու լուծումը։ Թեորիական այդ նոր պրոբլեմների շարքից կցանկանայինք առաջին հերթին մատնանշել պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը համաժողովրդական պետության վերափոխվելու մասին ձևակերպումը, սովետական պետության զարգացման նոր փուլի՝ նրա մահանալու պայմաններում, հասարակության կառավարման մեջ ժողովրդի ներգրավման նոր ձևերի, աշխատավորների ցածր վարձատրվող կատեգորիաների վարձատրության բարձրացման օբյեկտիվ հիմքերի, կոմունիզմի կառուցումը հիմնականում և լիովին ավարտելու ժամանակաշրջանների, էտապների ու ժամկետների մասին հարցերի լուծումը։

Այս պրոբլեմներն, իհարկե, անհնար է քննարկել մեկ հոդվածում։ Կցանկանայինք արտահայտվել վերը թվարկված պրոբլեմներից վերջինի շուրջը։

## II

Դեպի կոմունիզմ հասարակության զարգացման հաջորդական աստիճանների բացահայտման պրոբլեմը ծառացավ դեռևս գիտական կոմունիզմի հիմնադիրների առջև։ «Գոթայի ծրագրի քննադատությունը» աշխատության մեջ արդեն Մարքսը բացատրում է, որ հասարակությունը կարող է հասնել կոմունիզմին միայն սոցիալիզմի միջոցով։ Այստեղ պրոլետարիատի մեծ ուսուցիչն ամբողջովին ելնում էր տնտեսության և մարդկանց գիտակցության զարգացման օբյեկտիվ օրենքներից։ Տնտեսության և մարդկանց գիտակցության բարձրագույն՝ կոմունիզմի համար անհրաժեշտ զարգացմանն անհնար է հասնել կապիտալիզմի պայմաններում, ուստի հասարակությունը կարող է մտնել կոմունիզմին միայն «պրոլետարիատի ռևոլյուցիոն դիկտատուրայի», այսինքն՝ սոցիալիզմի դարաշրջանի միջոցով։

Պատմական նոր պայմաններում Լենինը զարգացնում է այդ ուսմունքը։ Բայց հանճարեղ առաջնորդի ուշադրությունն արդեն ուղղված է պրոբլեմի հետագա կոնկրետացման կողմը։ Վ. Ի. Լենինը մշակում է պատմական պրոցեսի առավելագույն արագացման հարցը, բայց, իհարկե, սոցիալիզմի օբյեկտիվ օրինաչափությունների շրջանակներում ու դրանց համապատասխան։ Այստեղից էլ նրա նշանավոր դրույթն այն մասին, որ տնտեսության վերափոխման հարցերում չի կարելի գործել անժամանակ, «կարմիրբանակային գրոհով», այսինքն՝ չի կարելի ուժով արմատավորել տնտեսության այնպիսի ձևեր, որոնք օբյեկտիվորեն հասունացած չեն։ «Մեզ հիստերիկ բռնկումներ պետք չեն։ Մեզ հարկավոր է պրոլետարիատի երկաթե գումարտակների համաչափ երթը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 333)։

Լենինի այս խոսքերը սոցիալական վերափոխումների լուծմանն առանց ավելորդ շտապողականության, խոհուն, զգույշ մոտեցում ունենալու անհրաժեշտության ցուցում են պարունակում։ Բայց Լենինը ձևակերպում է հարցի



ոչ միայն բացասական կողմը՝ առաջ չվազել, տնտեսական անհրաժեշտությունից առաջ չընկնել, այլև դրականը՝ սոցիալիզմի պայմաններում հասարակության առաջընթացի առավելագույն արագացման և պատմական վերափոխումների կոնկրետ ժամկետների գիտական որոշման հնարավորությունը։ «Մենք այժմ արմատական սոցիալական փոփոխություններ կատարելու համար անհրաժեշտ ժամկետներ սահմանելու՝ պատմության մեջ բավականին հազվադեպ առիթ ենք ստացել, և մենք այժմ պարզ տեսնում ենք, թե ի՛նչ կարելի է անել հինգ տարվա մեջ և ի՛նչ բանի համար հարկավոր են ավելի մեծ ժամկետներ» (Երկեր, հ. 33, էջ 574)։ Այսպես էր բացահայտում Լենինը օբյեկտիվ հնարավորությունների սահմաններում հասարակության գիտակցական զարգացման օրինաչափությունը սոցիալիզմի օրոք։

Կոմունիզմի ծավալուն կառուցման մեր դարաշրջանում Կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն այդ պրոբլեմի լուծումը դնում են նոր հիմքի վրա։ Պարտիան կրկին շեշտում է իր Ծրագրում. «ՍՄԿՊ-ն, որպես գիտական կոմունիզմի պարտիա, առաջ է քաշում և լուծում է կոմունիստական շինարարության խնդիրները նյութական և հոգևոր նախադրյալների նախապատրաստման ու հասունացման համեմատ, ղեկավարվելով այն բանով, որ չի կարելի թռչել զարգացման անհրաժեշտ աստիճանների վրայով, ինչպես նաև չի կարելի կանգ առնել ձեռք բերածի վրա, կասեցնել առաջընթաց շարժումը։ Կոմունիզմի կառուցման խնդիրների լուծումը իրագործվում է հաջորդական էտապներով»։

Կոմունիզմի կառուցումն իրագործվում է հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքի վրա գիտակցական ներգործության հնարավորության խիստ ընդլայնման, պլանավորման էլ ավելի գիտական ճշգրտման, նրանում պատմական ավելի մեծ ժամանակաշրջաններ ընդգրկելու հնարավորության, արտադրողական ուժերի հսկայական աճի և տեղի ունեցող գիտա-տեխնիկական ռևոլյուցիայի պայմաններում։ Դրա համար էլ պարտիան արդեն ի վիճակի է կոնկրետացնելու կոմունիստական շինարարության էտապներն ու ժամկետները, ի վիճակի է ցույց տալու կոմունիստական այս կամ այն վերափոխման ճշգրիտ ժամկետները։ Այսպիսով, հասարակական վերափոխումների գործում պատմությունը կերտելու մեր ազատությունը «հիստերիկ բռնկումներից», ցատկերից խուսափելու անհրաժեշտությունը հասկանալուց հասել է մինչև կոմունիզմի կառուցման որոշակի, ճշգրիտ ժամկետները, էտապներն ու ժամանակաշրջանները նշելու ազատության աստիճանին՝ մասսաների ստեղծագործության արդյունքների հավաստի նկարագրությամբ։ Դա արդեն անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորությունը այն թռիչքի սկիզբն է, որի մասին ժամանակին ասում էր Ֆ. Էնգելսը։

Սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու օրինաչափությունների ճանաչումը մեր պարտիային թույլ տվեց իր Ծրագրի նախագծում զարգացնել կոմունիզմի կառուցման էտապների ու ժամկետների մասին ուսմունքը։ Արդ, որո՞նք են դրանք։

Առաջին էտապը 1961—1970 թվականների տասնամյակն է։ Այդ էտապում, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելով, մեր երկիրը բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքով կգերազանցի կապիտալիզմի առավել հզոր ու հարուստ երկրին՝ ԱՄՆ-ին. Նշանակալի չափով կբարձրանա աշխատավորների նյութական բարեկեցությունը և կուլտուրական-տեխնիկական

մակարդակը, բոլորի համար կապահովվի ապրուստի լիություն. բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները կվերածվեն բարձր արտադրողական և բարձր եկամտաբեր տնտեսությունների. հիմնականում կբավարարվեն սովետական մարդկանց պահանջմունքները բարեկարգ բնակարանների գծով. կչքանա ծանր ֆիզիկական աշխատանքը, ՍՍՌՄ-ը կդառնա ամենակարճ աշխատանքային օրվա երկիր։

Ինչպես տեսնում ենք, առաջին տասնամյակում վճռական քայլ կկատարվի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ուղղությամբ և ձեռք կբերվի ժողովրդի բարեկեցության՝ աշխարհում ամենաբարձր մակարդակ։ Բայց անմիջաբար կոմունիստական վերափոխումներ դեռևս չեն կատարվի։ Առաջին տասնամյակը միայն հիմք կստեղծի սոցիալական ամենաբարդ պրոբլեմների հետագա լուծման համար։

Երկրորդ էտապը դա երկրորդ տասնամյակն է՝ 1971—1980 թվականները։ Այս էտապում լուծվում են արդեն այլ, անմիջաբար կոմունիստական խնդիրներ։ Այդ տարիներին կստեղծվի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա, ամբողջ ժողովրդի համար կապահովվի նյութական ու կուլտուրական բարիքների լիություն. սովետական հասարակությունն ընդհուպ կմոտենա ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի իրագործմանը, տեղի կունենա աստիճանական անցում միասնական համաժողովրդական սեփականության։

Այս երկու էտապների սոցիալական տեղաշարժերն այնքա՜ն նշանակալից ու էական են, որ պարտիան հայտարարում է իր Ծրագրում. «Այսպիսով, ՍՍՌՄ-ում հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակարգ»։

Հետևապես, կոմունիզմի կառուցման ներկա ժամանակաշրջանում, որը երկու հաջորդական էտապների է բաժանվում, հիմնականում կկառուցվի կոմունիզմի բարձրագույն փուլը։ Բայց պարտիայի խնդիրն է կոմունիզմի բարձրագույն փուլի լիակատար կառուցումը։ Իսկ դա կապված է այնպիսի հասարակական պրոբլեմների լուծման հետ, ինչպես քաղաքի և գյուղի միջև սոցիալ-տնտեսական ու կուլտուր-կենցաղային տարբերությունների, արդյունաբերական և գյուղատնտեսական աշխատանքների, ֆիզիկական և մտավոր աշխատանքի տարբերությունների լրիվ վերացումը, անցումը հասարակական ինքնավարության, ըստ պահանջմունքների բաշխման և այլն։ Դրանց իրագործման համար կպահանջվեն նոր էտապներ, որոնք կմտնեն մի նոր ժամանակաշրջանի մեջ։ Դրա մասին Ծրագրի նախագիծն ասում է. «Կոմունիստական հասարակարգի կառուցումը լիովին կավարտվի հաջորդ ժամանակաշրջանում»։

Այսպիսով, կոմունիզմի ծավալուն կառուցման ամբողջ դարաշրջանը բաժանվում է մի շարք էտապների, որոնք կազմում են երկու ժամանակաշրջան՝ հիմնականում կոմունիստական հասարակության կառուցման ժամանակաշրջան և կոմունիստական հասարակության լիակատար կառուցման ժամանակաշրջան։

Բայց որքա՞ն երկար պիտի ձգվի երկրորդ ժամանակաշրջանը։ Այդ հարցին պատասխանում են ՍՄԿՊ Ծրագրի նախագծի եզրափակիչ տողերը.

«Պարտիան հանդիսավոր կերպով հռչակում է՝ սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք»։

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ՄԵԾ ՔԻՄԻԱՆ

«Խոշորագույն խնդիրներից մեկն է,— ասված է պարտիայի Ծրագրի նախագծում,— քիմիական արդյունաբերության ըստ ամենայնի զարգացումը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ժամանակակից քիմիայի նվաճումների լրիվ օգտագործումը...»։

Եթե չունենայինք խիստ զարգացած քիմիական արդյունաբերություն և նույնպիսի ու նույն բնագավառի գիտա-հետազոտական աշխատանքների լայն ցանց, ապա և չէինք ունենա ոչ «Վոստոկ—1» ու ոչ էլ «Վոստոկ—2»-ը, սովետական գիտությունն այսօր չէր թափանցի հրաշելի Կոսմոսը։ Ավելին, առանց քիմիայի, նույնիսկ չէր լինի սովորական ավիացիան, ռազմական տեխնիկան։

Համարձակորեն կարելի է ասել, որ եթե չլիներ քիմիական արդյունաբերությունը, հատկապես հանքային պարարտանյութերի, թունավոր քիմիկատների հերբիցիդների արտադրությունը, սինթետիկ նյութերի լայն ասորտիմենտները, ապա գյուղատնտեսությունն այսօր չէր կարող կերակրել մարդկությանը։ Սինթետիկ նյութերի արդյունաբերությունը հնարավորություն տվեց, իսկ ապագայում էլ տասնապատիկ անգամներ ավելի լայն հնարավորություններ կտա մարդկությանը տասնյակ միլիոնավոր հեկտար ամենաբերրի հողեր ազատելու այլ ցանքերից և դնելու այնպիսի կուլտուրաների մշակության տակ, որոնք ծառայում են անմիջական սննդամթերքներ ստանալու համար։

Հեռու չեն այն ժամանակները, երբ բուրդը, բամբակը, բոլոր տեսակի մետաքսաթելերը կստացվեն միայն արհեստական և սինթետիկ եղանակներով։

Քիմիան անասնապահության զարգացման ամենահուժկու խթանն է։ Ամենից առաջ, նրա միջոցով կարելի է բազմապատկել խոտհարքների բերքատվությունը և դրանով իսկ ստեղծել կերի հսկայական պաշարներ. բացի դրանից, մի շարք քիմիկատներ օգտագործվում են որպես կեր, որը ավելացնում է անասունների մսատվությունը։ Այսպես, օրինակ՝ կարբամիդի (միզանյութի) մեկ կիլոգրամը մարսելու դեպքում, խոշոր եղջերավոր անասունը տալիս է 6—6,5 կիլոգրամ լրացուցիչ միս (կենդանի քաշով)։

Քիմիան ապագայի մեծ մետաղն է, անտառանյութը, շինարարական նյութը, այսպես է ասված պարտիայի Ծրագրի նախագծում։ «Մետաղը, փայտը, մյուս շինանյութերը գնալով ավելի մեծ չափով կփոխարինվեն խնայողաբեր, գործնական ու թեթև սինթետիկ նյութերով։ Խիստ կերպով կաճի հանքային պարարտանյութերի ու բույսերի պաշտպանության քիմիական միջոցների արտադրությունը»։

Այս լույսի տակ, միանգամայն հասկանալի է դառնում, թե ինչու պարտիայի XXI համագումարում, պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Մայիսյան

(1958 թ.), Հունիսյան (1959 թ.) և Հուլիսյան (1960 թ.) պլենումներում այդ ասպարեզի հետ սուր դրվեցին ինչպես քիմիական արդյունաբերության, նույնպես և նրա զարգացման հետ կապված արդյունաբերական մի շարք այլ բնագավառների վերելքի խնդիրները:

Պարտիայի Ծրագրի նախագծի վերջին տողերը ազդարարում են, որ սովետական մարդկանց ներկա սերունդը կտեսնի կոմունիզմը: Այստեղ է, որ քիմիան մեծ անելիքներ ունի:

Քիմիական արդյունաբերությունը եղել է, կա և դեռ երկար ժամանակ կմնա մեր ռեսպուբլիկայի ողջ արդյունաբերության առաջատար ճյուղը: Սակայն նրա դերը միայն դրանում չէ. բանը նրանումն է, որ նրա արտադրանքները հումույթ կամ կիսաֆաբրիկատ են հանդիսանում մի ամբողջ շարք թեթև ու տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների, մեքենաշինության, էլեկտրատեխնիկայի, սարքաշինության, գործիքաշինության և մի շարք այլ արտադրական ձեռնարկությունների համար:

Հայաստանը շատ հարուստ է բազմաթիվ հանքավայրերով ու հանածոներով, էժան էլեկտրական էներգիայով. նրանում զարգացած են մեքենաշինական և գործիքաշինական արդյունաբերության մի շարք ճյուղեր, երկիրը հարուստ է պատրաստի կադրերով, գիտա-հետազոտական մի շարք հաստատություններով:

Բնական գազի մուտքը Հայաստան մի հեղաշրջում է մեր քիմիական արդյունաբերության զարգացման ասպարեզում: Կասկածից վեր է, որ մոտակա տարիներում, բարեկամության գազամուղին զուգընթաց կկառուցվի և շահագործման կհանձնվի Անդրկովկասի ժողովուրդների բարեկամության նավթամուղը:

Բացի այս բոլորից, Բաքվում սկսված է և հսկայական մասշտաբներով կզարգանա քիմիայի համար մեկ ուրիշ հիասքանչ ելանյութի արդյունաբերություն: Դա գազային բենզինի արտադրությունն է: Վերջինս տրվում է բնական գազը վերամշակելու ընթացքում և երկրում արտադրվելու է տասնյակ հազարավոր ու նույնիսկ միլիոնավոր տոննաներով:

Ահա այն բազան, որի վրա աննախընթաց վերելք է ապրելու մեր ռեսպուբլիկայի քիմիան:

Որո՞նք են քիմիայի զարգացման ուղիները:

Հրազդանում արդեն սկսված է մի խոշոր լեռնաքիմիական կոմբինատի շինարարություն և այն լրիվին կավարտվի մինչև 1966—67 թվականները: Ներդրումներն այստեղ կազմելու են մի քանի տասնյակ միլիոն ռուբլի:

Սակայն բանը նրանումն է, որ այդ կոմբինատի կառուցումը դեռ չսկսած, արդեն հարց է բարձրացված նրա արտադրանքը կրկնապատկելու և այդ անպայմանորեն կիրագործվի մինչև 1970-ական թվականները: Այդ թվականներին կոմբինատի արտադրանքը կհասնի մի քանի միլիոն տոննայի, որից՝ ցեմենտինը՝ ավելի քան 3 միլիոն, կավահողինը՝ մոտ 250 հազար, սոդայինը՝ մի քանի տասնյակ հազար տոննա, երեանիտինը՝ ավելի քան հարյուր հազար տոննա և այլն: Կոմբինատում բանվոր-ծառայողների թիվը կհասնի մի քանի հազար մարդու, կկառուցվի բանավան՝ ավելի քան 40000 մարդու համար: Կոմբինատի համար հիմնական հումք են հանդիսանալու կրաքարը և նեֆելինային սիենիտները, որոնց պաշարները մեր ռեսպուբլիկայում պրակտիկորեն անսպառ են:



Չափազանց կարևոր է այս կոմբինատի նշանակությունը մեր ռեսպուբլիկայի համար: Ամենից առաջ վերը նշված քանակությամբ ցեմենտի արտադրումը լրիվին կվերափոխի մեր շինարարության քանակն ու որակը: Կկառուցվեն ու շահագործման կհանձնվեն մի քանի միլիոն խորանարդ մետր կարողություն ունեցող երկաթ-բետոնե առարկաների և իրերի ձեռնարկություններ, որոնց շնորհիվ շինարարությունը մեծ թափով կզարգանա:

Կավահողի բազայի վրա կլայնանա ալյումինի արդյունաբերությունը, որն իր հերթին խթան կհանդիսանա կաբելի գործարանների ու առհասարակ էլեկտրատեխնիկական մի շարք գործարանների արտադրանքների թողարկման շեշտակի վերելքի գործին: Այդ գործարանները երկրին լրացուցիչ կտան տասնյակ ու հարյուր միլիոն ռուբլու ամենաանհրաժեշտ արտադրանք: Այդ ձեռնարկություններում կաշխատեն հազարավոր բանվորներ: Էլ ավելի արդյունավետ է երեանիտի վերամշակման պրոբլեմը: Բանը նրանումն է, որ վերջինս մի հոյակապ պատրաստի ելանյութ է ամենաբազմատեսակ ապակիների արտադրության համար:

Նախատեսվում է երեանիտի բազայի վրա Արզնիում կառուցել բյուրեղապակյա իրերի մի հսկայական ձեռնարկություն, տարեկան մի քանի տասնյակ միլիոն հատ բյուրեղապակյա իրերի արտադրողականությամբ: Բացի դրանից, կկառուցվի հայելու ապակու գործարան՝ տարեկան մեկ միլիոն քառակուսի մետր կարողությամբ: Նույն բազայի վրա կկառուցվի լուսամուտի ապակիների գործարան՝ մի քանի տասնյակ միլիոն քառակուսի մետր մակերեսի կարողությամբ:

Հետաքրքրական է, որ այդ երեանիտից ստացվում են հոյակապ օպտիկական ապակիներ, որոնց գործարանը լինելու է խոշորագույններից մեկը ողջ Սովետական Միությունում:

Նախատեսված ձեռնարկությունների թվումն է նաև մաքուր սրվակների գործարանը (պարֆյումերիայի, լաբորատոր սրվակներ և դեղագործական սրվակներ), որի տարեկան արտադրանքը կհասնի մի քանի տասնյակ միլիոն հատ սրվակի:

Պետք է կառուցվի նաև կոնյակի շշերի գործարան՝ հենց նույն մաքուր երեանիտից. այն ժամանակ մեր կոնյակի շշերը կպատճառեն հատուկ էսթետիկ հաճույք:

Վերոհիշյալ ձեռնարկությունները միասին վերցրած երկրին կտան մի քանի տասնյակ միլիոն ռուբլու արտադրանք: Այդ ձեռնարկություններում կաշխատեն տասնյակ հազարավոր մարդիկ: Արզնին դառնալու է քաղաք՝ առնվազն 60000 ազգաբնակչությամբ (այնտեղ գործելու են նաև այլ ձեռնարկություններ):

Քանի որ խոսքը ապակու գործարանների մասին է, ապա շարունակենք:

Բացի վերը նշված ապակիներից, որոնց արտադրանքը կազմակերպվելու է երեանիտի բազայի վրա, կառուցվելու են նաև շշերի արտադրության այլ գործարաններ՝ մեր կվարցիտների ու պեմզաների բազայի վրա:

Հայտնի է, որ ռեսպուբլիկան չափազանց հարուստ է հանքային ջրերով, որոնց օրվա ծավալը հասնում է մի քանի միլիոն լիտրի: Միայն համաշխարհային համբավ վայելող «Ջերմուկ»-ի ջրի ելքը հասնում է 3 միլիոն լիտրի, կամ 6 միլիոն շշի:

Այսպիսով, եթե միայն «Ջերմուկ»-ը լրիվ օգտագործենք, մենք տարեկան

պետք է ունենանք 2,2 միլիարդ շիշ։ Իսկ եթե հաշվենք նաև մյուս հանքային ջրերի պահանջը, գինեգործությունը և այլն, ապա ռեսպուբլիկան տարեկան առնվազն պետք է արտադրի 3,5—4 միլիարդ շիշ։ Ահա և մասշտաբ, իսկական կոմունիստական հասարակարգի մասշտաբ։

Անտարակույս է, որ այս պահանջները պետք է բավարարվեն, իսկ քանի՞ տարում— այսօր դժվար է ասել. համենայնդեպս հիմնականում նրանք պետք է կառուցվեն մոտակա 7—15 տարիներում, իսկ մի քանիսն էլ պետք է կառուցվեն այս յոթնամյակի ընթացքում։ Դրանցից մեկը կլինի Ջերմուկի գործարանը՝ տարեկան 300—350 միլիոն շիշ արտադրողականությամբ։ Մյուսը նախատեսված է կառուցել Հանքավանում և երրորդը՝ Կամոյում։

Թող տարօրինակ չթվա, որ մենք խոսում ենք քիմիայի մասին, բայց թվարկում ենք նաև ապակետարայի գործարանները։ Ապակյա արտադրությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ մաքուր քիմիա։

Նշված երեք ձեռնարկությունները հիմնովին կվերափոխեն այդ վայրերի էկոնոմիկան, կուլտուրան, ապրելակերպը։

Ելնելով ժողովրդական տնտեսության հետագա զարգացման և կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման շահերից, անհրաժեշտ ենք համարում, որպեսզի ռեսպուբլիկայում ևս կառուցվի քիմիական մի մեծ կոմբինատ։ Վատ չի լինի, եթե այդ կոմբինատի կառուցումը նախատեսվի հեռավոր պլաններում՝ յոթնամյակի սահմաններից դուրս։ Այս ձեռնարկությունը կլինի մեր ռեսպուբլիկայի քիմիայի դափնեպսակը ինչպես իր հզորությամբ, այնպես էլ իր որակական ցուցանիշներով։ Ձեռնարկությունը տարեկան կարտադրի հազարավոր տոննա քիմիկատ՝ ներմուծելով միայն աննշան քանակի հումույթ, այն էլ Բաքվից։ Մնացած բոլոր հումույթները տեղական են ու արտադրվում կամ արտադրվելու են ռեսպուբլիկայում։ Հնարավոր է լայն չափերով օգտագործել սեղանի մեր աղը, որի պաշարները Հայաստանում հասնում են տասնյակ միլիոնավոր տոննաների։

Ձեռնարկության համար հիմնական հումույթ է ծառայելու սինթեզ-գազը, որը ստացվելու է Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում, որպես կիսաֆաբրիկատ (ացետիլենը բնական գազից ստանալուց հետո)։ Բանը նրանումն է, որ այդ սինթեզ-գազը ուղղակի պատրաստի հումույթ է՝ երկու հոյակապ քիմիական նյութեր՝ մեթանոլ և ամիակ ստանալու համար։

Ունենալով այս երկու քիմիկատները, որպես կիսաֆաբրիկատ և ներմուծելով (Բաքվից) 135 հազար տոննա գազային բենզին և մոտ 25 հազար տոննա ցիկլոհեկսան, օգտագործելով ռեսպուբլիկայի ձեռնարկություններում արտադրվող մի շարք քիմիկատներ ու հանածոներ (հատկապես սեղանի աղը), մեր կարծիքով հնարավոր է ստանալ մոնոմեր կապրոլակտամ (հումույթ կապրոնային թելերի համար)՝ 20 հազար տոննա, ակրիլոնիտրիլ (մոնոմեր)—հումույթ բրդեղեն թելեր ու կտորներ արտադրելու համար՝ 20 հազար տոննա։

— Ֆորմալդեհիդ (մոնոմեր)—կիսահումույթ ամենալավ պլաստիկ մասսաներ ստանալու համար՝ մոտ 50000 տոննա։

— Կարբամիդ—միզանյութ (մոնոմեր)—անասնակեր, հոյակապ պարարտանյութ, ելանյութ պլաստիկ մասսաներ ստանալու համար՝ 100 հազար տոննա։

— Ամիակային սելիտրա—ազոտական պարարտանյութ՝ 110 հազար տոննա։



— Նատրիումական սելիտրա—պարարտանյութ հատկապես շաքարի ճակնդեղի համար՝ տասնյակ հազար տոննա։

— Ամոնիում—սուլֆատ—պարարտանյութ՝ 65 հազար տոննա. այս պարարտանյութից կարելի կլինի ստանալ հարյուր հազարավոր տոննաներ, եթե այլ կերպ տարվի մի քանի պրոցեսներ (այս հարցերը դեռ վերջնական լուծված չեն)։

— Կալցինացված սոդա՝ մի քանի տասնյակ հազար տոննա։

— Ցունգիցիդ—բուսականության պահպանման համար (ոչնչացնում է վնասատուներին)՝ 10 հազար տոննա։

— Մետանոլ—լուծիչ, ռեագենտ՝ հազարավոր տոննա։

— Քառաքլորային ածխածին —(լուծիչ)՝ տասնյակ հազար տոննա։

— Մոտ մեկ տասնյակ զանազան օրգանական նյութեր-մոնոմերներ՝ մի քանի տասնյակ հազար տոննաներով։

Ինչպես տեսնում ենք, այս ձեռնարկությունն ինքնըստինքյան մի հոյակապ ամբողջություն է։ Այստեղ կաշխատեն առնվազն մեծաթիվ բանվոր-ծառայողներ և ինժեներա-տեխնիկական անձնակազմ։ Այս վայրը կդառնա գեղեցիկ քաղաք-արբանյակ՝ 60—65 հազար ազգաբնակչությամբ։ Սակայն այս կոմբինատի նշանակությունը դրանով չի սահմանափակվում։ Ուշագրավ է այն հանգամանքը, որ ձեռնարկության արտադրանքը հիմնականում լինելու են մոնոմերները, որոնց վերամշակման ձեռնարկությունները ռեսպուբլիկան կծածկեն գործարանների խիտ ցանցով։

Այսպես, միայն կապրոլակտամի բազայի վրա հնարավոր է կառուցել երկու խոշոր վերամշակման ձեռնարկություն, որոնցում կաշխատեն մեծ քանակությամբ բանվորներ. իրենց հերթին ստացված կապրոնաթելերը կգնան գործվածքային, տրիկոտաժային և կորդի արտադրություն։ Այս ձեռնարկություններում նույնպես կաշխատեն տասնյակ հազար բանվոր-ծառայողներ և ինժեներա-տեխնիկական անձնակազմ։

Նույնը վերաբերվում է նաև ակրիլոնիտրիլին։ Հնարավոր է կառուցել երկու խոշոր բրդաթելերի գործարաններ՝ տաս հազարական տոննա արտադրողականությամբ։ Թելերը վերամշակող ձեռնարկություններում՝ գործվածքների, կարի, տրիկոտաժի—դարձյալ կաշխատեն տասնյակ հազարավոր մարդիկ։

Ունենալով ֆորմալդեհիդը, կարբամիդը (միզանյութը) և մելամինը (Կիրովականից) հնարավոր է ստեղծել ամենաբազմազան պլաստիկ մասսաների մի քանի գործարաններ, դարձյալ տասնյակ հազարավոր աշխատավոր ձեռքերով։ Նույնը, գուցե և ավելին կարելի է ասել մյուս մոնոմերներ վերամշակող ձեռնարկությունների մասին։ Դրանք շատ են, բոլորը թվել հնարավոր չէ։

Այդ ձեռնարկությունները իսկական կոմունիստական հասարակարգի օբյեկտներ են։

Ռեսպուբլիկայի գիտնականների ու ինժեներների համատեղ ջանքերով մշակված է մի նոր եղանակ՝ պոլիվինիլսպիրտից սինթետիկ մի նոր թել ստանալու համար։ Աշխատանքներն արդեն ավարտված են և կիսագործարանային մասշտաբներով ստացվում են հարյուրավոր կիլոգրամ սինթետիկ թելեր։ Այդ թելերի համանուն տեսակներն արտասահմանում անվանել են «Վինիլոն»։ Մեր գիտնականներն այն անվանել են «Երանիտ»։ Նա 3-ից 4 անգամ ավելի ամուր է, քան բամբակը և շատ էժան, քան վերջինս։ Նոր մեթոդներ են մշակվում՝ այդ

թներին ավելի մեծ ամրություն տալու համար։ Այն ժամանակ, առանց խուչընդոտների այդ թելերը կօգտագործվեն կորդի արդյունաբերության մեջ։ Այժմ այն ավելի քան պիտանի է լայն սպառման առարկաներ արտադրելու համար (հիմնականում հագուստեղեն)։ Նախատեսված է յոթնամյակում և նրան հաջորդող մեկ-երկու տարում նախագծել, կառուցել և շահագործման հանձնել մի խոշոր ձեռնարկություն՝ Հրազդան քաղաքում։ Նախատեսվում է հենց այդ նույն վայրում էլ կազմակերպել ացետիլենի (հումույթի) և պոլիվինիլսպիրտի (կիսաֆաբրիկատի) արտադրությունը։ Այն ժամանակ այդ ձեռնարկությունը կդառնա մի խոշոր կոմբինատ, ուր կաշխատեն շատ և շատ բանվոր-ծառայողներ։ Հետևապես, Հրազդանը կավելանա ևս 15—20 հազար բնակչով։ Ձեռնարկության համախառն արտադրանքը կհասնի մի քանի տասնյակ միլիոն ռուբլու։

Վերամշակող ձեռնարկությունը կամ կկառուցվի հենց նույն տեղում, կամ Սևան քաղաքում։ Այն տարեկան կտա մեծ քանակությամբ մանրաթել, մի քանի տասնյակ միլիոն ռուբլու արժողությամբ։ Մանրաթելերը կմշակվեն՝ մի մասը Սևանում, մյուս մասը՝ ռեսպուբլիկայի մյուս շրջաններում ու ավաններում· Սևանում բանվոր-ծառայողների թիվը միայն այս միջոցառման շնորհիվ կավելանա 4500—5000 մարդով, կամ մոտ 15—17000 ազգաբնակչությամբ։

Երևանից փոքր ինչ հարավ՝ Նորագավթի կոլտնտեսությունից վերցված է մի փոքրիկ հողամաս, ընդամենը 20 հեկտար տարածություն։ Այդ տերիտորիայում նախապատրաստական աշխատանք է տարվում և եկող տարվանից կսկսվի կառուցվել Երևանի քիմիական ռեակտիվների գործարանը։ Նրա արժեքը կկազմի մի սոլիդ գումար, տարեկան արտադրանքը նույնպես մի քանի միլիոն ռուբլի։ Առաջին հայացքից այս «փոքրիկ» գործարանը (համեմատեք վերը նշված գիգանտների հետ) ունի հսկայական հեռանկարներ։ Նա նախագծվում է ընդամենը 800 անուն ռեակտիվների համար, իսկ հետագայում, մինչև քսանամյակի վերջը, այն պետք է թողարկի բազմաքանակ, գուցե և էլ ավելի ռեակտիվներ... ։ Այս գործարանն ունի մի շարք յուրահատկություններ՝ ինժեներա-տեխնիկական անձնակազմի և բանվորների թվի հարաբերությունը լինելու է մեկին-մեկ։ Բանվորական անձնակազմը պետք է ունենա առնվազն միջնակարգ կամ միջնակարգ մասնագիտական կրթություն։ Ձեռնարկությունում կաշխատեն հարյուրավոր ինժեներներ ու գիտնականներ։

Մյուս յուրահատկությունն այն է, որ գործարանն արտադրելու է ոչ միայն ստանդարտ ռեակտիվներ, այլև ունենալու է անհատական պատվերների ցեխ՝ մեկ անգամվա արտադրության համար։ Այստեղ արտադրվելու են մի շարք ռեակտիվներ, որոնք իրենց տեսակով միակն են լինելու ողջ Սովետական Միությունում։

Համարձակորեն կարելի է ասել, որ եկող յոթնամյակում ռեսպուբլիկայում կբարձրանա մի հսկայական ձեռնարկություն, ուր կաշխատեն մի քանի հազար ինժեներներ, տեխնիկներ ու գիտնականներ։ Այդ ձեռնարկությունը կտա տասնյակ միլիոնների բազմահազար ռեակտիվներ։ Բացի դրանից, այն կարտադրի բազմաթիվ վիտամիններ։

Մոտակա տարիներին մեզ մոտ նոր ծնունդ կառնի քիմիկո-դեղագործական արդյունաբերությունը։ Հատկապես վերջին տարիներին Հայաստանի Գիտությունների ակադեմիայի Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը իր մշակած և արտադրած մի քանի տասնյակ սինթետիկ դեղորայքով մեծ համբավ ստացավ ողջ Սովետական Միությունում։



Մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը մի անսպառ բաղա է՝ դեղագործական արդյունաբերությունը մեծ մասշտաբներով զարգացնելու համար։ Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտի գործարանում, ինչպես և քիմիական ռեակտիվների գործարանում (նրանք իրենց բնույթով շատ նման են) կաշխատեն հարյուրավոր ու հազարավոր ինժեներներ, տեխնիկներ, գիտնականներ, քիմիկոսներ։ Նրանք երկրին կտան միլիոնավոր ռուբլիների բարձրորակ բազմահազար դեղորայք։

Դժվար է այս հոդվածում խոսել գալիքի վիթխարի գործերի մասին։ Նախ այն պատճառով, որ այդ բոլորը թվարկել մեկ հոդվածի սահմաններում անհնարին է և, երկրորդ, դժվար է կանխատեսել, թե ապագայում ինչեր կանի սովետական ստեղծագործ ժողովուրդը։ Չէ՞ որ այդ պրոբլեմների վրա միայն մեր ռեսպուբլիկայում աշխատում են մի քանի գիտա-հետազոտական ինստիտուտներ, Գիտությունների ակադեմիան, Պետպլանը, Ժողտնտխորհը։

Կցանկանայինք մի քանի խոսք ասել գործող ձեռնարկությունների վերակառուցումների և նոր միայն շարք մտնող գործարանների մասին։

Եկող տարվանից շահագործման կհանձնվի Կիրովականի ացետատային մետաքսի գործարանը. այն իր կարողությամբ կլինի անհամեմատ մեծ։ Իսկ 1966—1967 թվականներին մետաքսաթելի արտադրությունը կկրկնապատկվի, քանի-որ հումույթի ցեխերը կառուցվում են այդ հզորությամբ։ Այստեղ կաշխատեն հազարավոր բանվորներ, ինժեներներ, տեխնիկներ ու ծառայողներ։ Ձեռնարկությունը կտա մեծ քանակի արտադրանք։

Խիստ կընդարձակվեն վերամշակող ձեռնարկությունները (Ստեփանավանի, Կիրովականի, Կամոյի տրիկոտաժային ֆաբրիկաները)։

Կկառուցվի Դիլիջանի տրիկոտաժի ֆաբրիկան, մետաքսի մեծ գործարան Սևանում և այլն։ Այս ձեռնարկություններում կաշխատեն տաս հազար մարդ, դրանք երկրին կտան մի քանի տասնյակ միլիոն ռուբլու արտադրանք։

1965 թվականին, այսօրվա համեմատությամբ, իր արտադրանքը կրկնապատկելու է Կիրովի անվան գործարանը։ Նրա համախառն արտադրանքը կհասնի տասնյակ միլիոնների։ Ամենախիստ տեմպերով կզարգանա «Պոլիվինիլացետատ» գործարանը, որի համախառն արտադրանքը կավելանա մոտ 4 անգամ։

Կիրովականի քիմիական կոմբինատը հիմնովին կվերակառուցվի։ Ամիակի արտադրությունը կփոխվի գազի հումույթի ռելսերի վրա, որի շնորհիվ հնարավոր կլինի նրա արտադրանքը ավելի քան եռապատկել։ Կոմբինատի սիստեմում կկառուցվի կարբամիդի (միզանյութի) նոր գործարան՝ տարեկան տասնյակ հազարավոր տոննա արտադրողականությամբ։ Այն հնարավորություն կտա հզոր քայլերով զարգացնելու ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը և հատկապես անասնապահությունը։

Այս տարվա 4-րդ եռամսյակում շարք կմտնեն Կիրովականի քիմկոմբինատի մելամինի և դիցիանդիամիդի ցեխերը, որոնք ունեն խոշոր միութենական նշանակություն։

Արտադրությանը զուգընթաց խոշոր մասշտաբներով կընդարձակվեն գիտա-հետազոտական հիմնարկությունները՝ Գիտությունների ակադեմիայի Օրգանական քիմիայի ինստիտուտը, Ժողտնտխորհի Անօրգանական քիմիայի, քարի ու սիլիկատների ինստիտուտները, Կաուչուկի գիտա-հետազոտական

ինստիտուտի Հայաստանի ֆիլիալը, «Հայքիմնախագիծ» գիտա-հետազոտական-նախագծային ինստիտուտը և մի քանի այլ ձեռնարկությունների գիտահետազոտական լաբորատորիաներ։ Այս ձեռնարկություններում՝ միասին վերցրած կաշխատեն առնվազն 4500—5000 գիտական աշխատողներ, ինժեներներ, լաբորանտներ ու բանվոր—ծառայողներ։

Գիտական միտքը կդրվի արժանավայել բարձրության վրա, լաբորատորիաները կհագեցվեն սովետական գիտության նորագույն նվաճումների տեխնիկայով, կունենան իրենց տրամադրության տակ իզոտոպների լաբորատորիաներ և այլն։

Համարձակորեն կարելի է ասել, որ մոտակա ապագայից սկսած՝ քիմիային և քիմիական արդյունաբերությանը վերաբերվող բոլոր տեսակի նախագծումները կկատարվեն այստեղ՝ մեր ռեսպուբլիկայում, իսկ այդ կարելի է պատկերացնել միայն մեզ մոտ՝ Սովետական իրավակարգում, այդպիսի բան կարող է անել միայն սովետական մարդը՝ կոմունիզմ կառուցող հասարակարգը։

Բուռն ոգևորությամբ է բռնկվում մարդը, երբ նայում է դեպի գալիքները, ազգային հպարտությամբ է ողողվում ոգիդ, երբ դիտում ես մեր ապագան...։

Մնում է միայն աշխատել, ապրել ու աշխատել այդ հոյակապ կառույցի վրա, որը կոչվում է կոմունիզմի կառույց։

Երանի՜ գալիք սերունդներին...

Ս. ԹԵՎՈՍՅԱՆ
Ինժեներ-տեխնոլոգ

---

Խոշորագույն խնդիրներից մեկն է ՔԻՄԻԱԿԱՆ արդյունաբերության ըստ ամենայնի զարգացումը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ժամանակակից քիմիայի նվաճումների լրիվ օգտագործումը, որը հսկայական չափով ընդլայնում է ժողովրդական հարստության անման, արտադրության նոր, ավելի կատարյալ ու էժան միջոցների և ժողովրդական սպառման առարկաների թողարկման հնարավորությունները: Մետաղը, փայտը, մյուս շինանյութերը գնալով ավելի մեծ չափով կփոխարինվեն խնայողաբեր, գործնական և թեթև սինթետիկ նյութերով: Խիստ կերպով կաճի հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության քիմիական միջոցների արտադրությունը:

(ՍՄԿԿ ՆՈՐ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻՑ)

# ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՄԵՆԱԲԱՐՁՐ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

Կյանքն անառարկելիորեն ապացուցեց, որ միայն սոցիալիստական հասարակարգն է ունակ բարձրացնելու հասարակության բոլոր անդամների կենսամակարդակը, բավարարելու նրանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները։ Դա միանգամայն օրինաչափ երևույթ է, որովհետև այստեղ արտադրության միջոցները, երկրի ամբողջ հարստությունը պատկանում են ժողովրդին և օգտագործվում նրա կողմից։ Այս հանգամանքը առաջացնում է հասարակության բոլոր անդամների կենսական շահագրգռվածություն՝ ավելի արագ տեմպերով առաջ մղելու արտադրողական ուժերի զարգացումը։ Այստեղ հասարակության յուրաքանչյուր անդամ իր գործունեության ընթացքում ամենից առաջ նկատի է ունենում ընդհանուրի շահերը, պետական ու հանրային հարստության ավելացումը, որի մեջ տեսնում է ամբողջ հասարակության, հետևաբար նաև իր բարեկեցիկ ու կուլտուրական կյանքի հորդառատ աղբյուրը։

Կապիտալիստական հասարակարգի նկատմամբ ունեցած իր առավելությունների շնորհիվ սոցիալիստական հասարակարգն ապահովում է արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման ավելի բարձր տեմպեր, մեծ չափերով ավելացնում է նյութական բարիքների արտադրությունը և դրանով իսկ անհրաժեշտ պայմաններ ու հնարավորություններ ստեղծում ժողովրդի կենսամակարդակը սիստեմատիկաբար բարձրացնելու համար։

Այժմ, երբ մեր երկիրը թևակոխել է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, երբ կոմունիզմի կառուցումը դարձել է սովետական ժողովրդի անմիջական գործը, Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր առջև խնդիր է դնում մեր երկրում ստեղծել աշխարհում ամենաբարձր կենսամակարդակ։ Դա ամենայն պարզությամբ ու որոշակիությամբ երևում է պարտիայի նոր Ծրագրի նախագծից, որն ամենաջերմ ընդունելություն ու պաշտպանություն է գտել պարտիայի անդամների և բոլոր աշխատավորների կողմից։ Ծրագրի Նախագծում նշվում է, որ երկու տասնամյակի ընթացքում ՍՍՌՄ-ում հիմնականում կկառուցվի կոմունիստական հասարակարգ: Կոմունիստական հասարակարգի լիակատար կառուցումը կավարտվի հաջորդ ժամանակաշրջանում։

Առաջին տասնամյակում *(1961—1970 թվականներ)* Սովետական Միությունը, ստեղծելով կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ կգերազանցի կապիտալիզմի առավել հզոր ու հարուստ երկրին՝ ԱՄՆ-ին։ Այդ ժամանակամիջոցում նշանակալից չափով կբարձրանա աշխատավորների նյութական բարեկեցու-

*թյունը և բոլորի համար կապահովվի նյութական լիություն։ Երկրորդ տասնամյակում (1971—1980 թվականներ) կստեղծվի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, ամբողջ բնակչության համար կապահովվի նյութական և կուլտուրական բարիքների առատություն, սովետական հասարակությունը ընդհուպ կմոտենա ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքի իրականացմանը։*

*Կոմունիստական հասարակարգի կառուցման ամբողջ ժամանակաշրջանում ամեն ինչ կարվի մարդու համար, նրա լիառատ կյանքի ու բարձր կենսամակարդակի համար։ Ահա թե այդ առթիվ ինչ է ասվում պարտիայի նոր Ծրագրի նախագծում. «Այժմ բոլոր հնարավորությունները կան ամբողջ բնակչության՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի բարեկեցության արագ բարձրացման համար։ ՍՄԿՊ-ն դնում է համաշխարհային պատմական նշանակություն ունեցող խնդիր՝* Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ՝ կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ»։

*Այստեղ ամենից առաջ նկատի է առնվում ժամանակակից կապիտալիստական աշխարհի ամենազարգացած երկիրը՝ Ամերիկայի Միացյալ Նահանգները։ Բայց դա նշանակո՞ւմ է, թե ԱՄՆ-ի ժողովրդի կենսամակարդակը ինչ-որ սահման է, որին մենք պետք է հավասարվենք։ Ո՛չ, չի նշանակում։ Պետք է նկատի ունենալ, որ մի շարք կարևոր ցուցանիշներով, ինչպիսիք են ժողովրդական կրթությունը, գիտության առանձին ճյուղերի զարգացումը, արվեստն ու կուլտուրան, առողջապահության ու սոցիալական ապահովության գործի կազմակերպումը, գործազրկության վերացումը և այլն, Սովետական Միությունը վաղուց համաշխարհային առաջնություն է շահել և հսկայական առավելություններ ունի Ամերիկայի Միացյալ Նահանգների համեմատությամբ։ Բայց դրա հետ միասին, պատմական մի շարք օբյեկտիվ պատճառների հետևանքով (ցարական Ռուսաստանից ժառանգած տնտեսական ծայրահեղ հետամնացությունը, իմպերիալիստական պետությունների կողմից մեզ պարտադրած պատերազմներում կրած հսկայական զոհերը, երկրի պաշտպանության կարիքների համար ուժերի մի զգալի մասի առանձնացման մշտական անհրաժեշտությունը և այլն) մեր երկրին հնարավորություն չէին տալիս որոշ սննդամթերքների, կոշկեղենի, հագուստեղենի և ժողովրդական սպառման մյուս ապրանքների, հատկապես երկարատև օգտագործման առարկաների արտադրությունն ընդլայնելու և այդ ուղղությամբ բնակչության պահանջմունքները լրիվ բավարարելու։*

*Այժմ, կապիտալիզմի հետ տնտեսական խաղաղ մրցության ընթացքում, խոսքն այն մասին է, որ վերոհիշյալ ապրանքների արտադրությամբ ոչ միայն հասնել, այլև առաջ անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներից։ Դա միանգամայն ռեալ խնդիր է, որովհետև մեր երկրի արդյունաբերությունը զարգացել և արտադրության տեմպերով վաղուց առաջ է անցել կապիտալիստական բոլոր երկրներից։ Մյուս կողմից, պարտիայի Ծրագրում նշված արմատական միջոցառումների կենսագործման շնորհիվ ՍՍՌՄ-ը առաջիկայում կունենա չտեսնված հզոր արտադրողական ուժեր, կգերազանցի ամենից ավելի զարգացած երկրների տեխնիկական մակարդակը և բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ, և, հետևապես, ժողովրդի նյութական բարեկեցությամբ աշխարհում կգրավի առաջին տեղը։*

*Պարտիայի Ծրագրի նախագծում ասված է, որ այդ խնդիրը կիրագործվի*



*հետևյալ ճանապարհներով՝ ա) աշխատավորների անհատական, ըստ աշխատանքի՝ քանակի և որակի վարձատրության բարձրացում՝ մանրածախ գների իջեցման և բնակչությունից գանձվող հարկերի վերացման զուգորդմամբ. բ) հանրային այն ֆոնդերի ընդլայնում, որոնք հասարակության անդամներին են բաշխվում՝ անկախ նրանց աշխատանքի քանակից ու որակից, այսինքն՝ ձրի (կրթություն, բուժում, կենսաթոշակային ապահովություն, մանկական հիմնարկներում երեխաներին պահելը, անցումը կոմունալ ծառայություններից անվճար օգտվելուն և այլն)։*

*Ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացումը տեղի կունենա ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի բուռն զարգացման բազայի վրա։ Բավական է նշել, որ* ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքի ծավալը *առաջիկա 10 տարվա ընթացքում մոտավորապես երկու և կես անգամ, իսկ 20 տարվա ընթացքում՝ ոչ պակաս քան վեց անգամ կգերազանցի ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության արդի մակարդակը։ Ծանր արդյունաբերության առավել զարգացման զուգընթաց կապահովվի ժողովրդական սպառման առարկաների արտադրության արագ աճը։ Թեթև ու սննդի արդյունաբերության արագացված զարգացման հետ միասին ծանր արդյունաբերության ձեռնարկությունների արտադրանքի մեջ կբարձրանա ժողովրդական սպառման ապրանքների բաժինը, բնակչության կենցաղային սպասարկման ուղղությամբ լայնորեն կօգտագործվեն էլեկտրաէներգիան և բնական գազը։*

*Խոշոր առաջընթաց քայլեր կարվեն նաև սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում։* ՍՍՌՄ գյուղատնտեսության արտադրանքի ընդհանուր ծավալը *առաջիկա 10 տարում կմեծանա մոտավորապես երկու և կես անգամ, իսկ 20 տարում՝ երեք և կես անգամ։ Այդպիսով մեր երկրում կստեղծվի գյուղատնտեսական մթերքների լիակատար առատություն։ Գյուղատնտեսական արտադրանքի աճը կգերազանցի այդ արտադրանքի աճող պահանջմունքից և Սովետական Միությունը առաջին տասնամյակում ԱՄՆ-ից առաջ կանցնի բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական հիմնական մթերքների արտադրությամբ։*

*Պարտիան ելնում է լենինյան այն դրույթից, որ կոմունիզմի կառուցումը պետք է հենվի նյութական շահագրգռվածության սկզբունքի վրա, որ ըստ աշխատանքի վարձատրությունն առաջիկա քսանամյակի ընթացքում կմնա աշխատավորների նյութական ու կուլտուրական պահանջների բավարարման հիմնական աղբյուրը։*

*Նյութական շահագրգռվածության սկզբունքի պահպանման հետ միասին աստիճանաբար կրճատվելու է աշխատավորների բարձր և առավել ցածր եկամուտների տարբերությունը։ Ամբողջ բնակչության բարեկեցության վերելքի պայմաններում եկամուտների ցածր մակարդակները կմոտենան ավելի բարձր մակարդակին, աստիճանաբար կկրճատվի գյուղացիների և բանվորների ցածր վարձատրվող և բարձր վարձատրվող աշխատավորների, երկրի տարբեր շրջանների բնակչության եկամուտների տարբերությունը։ Դա, իհարկե, չի կարող տեղի ունենալ ավտոմատ կերպով։ Այդ պրոցեսը պետք է զարգանա չորակավորված աշխատողների որակավորման, նորագույն տեխնիկայի արմատավորման, ձեռքի աշխատանքի կրճատման, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով։ Այս առումով պարտիայի Ծրագրի նախագծում ասված է. «Զորակավորված բանվորների ու ծառայողների ավելի*

ու ավելի մեծ մասսաներ կորակավորվեն, իսկ որակավորման և աշխատանքի արտադրողականության մակարդակի միջև եղած տարբերության նվազեցումը կուղեկցվի վարձատրության մակարդակի տարբերությունների հետևողական կրճատմամբ»։

Ինչպես տեսնում ենք, նախագծում ասվում է միայն բանվորների ու ծառայողների որակավորման մասին։ Մեզ թվում է, որ այդ նույն բանը պետք է ասվի նաև կոլտնտեսային գյուղացիության որակավորման մասին, որովհետև կոլտնտեսականների վարձատրությունը նույնպես կատարվում է ըստ արտադրանքի քանակի ու որակի, ընդ որում որակավորված կոլտնտեսականները ավելի շատ արտադրանք են տալիս ու բարձր վարձատրվում, քան մյուսները։ Պետք է նկատի ունենալ նաև այն (ինչպես նշվում է պարտիայի նոր Ծրագրի նախագծում), որ տեխնիկական զինվածության և արտադրության կազմակերպման տեսակետից գյուղատնտեսությունը մոտենալու է արդյունաբերությանը, իսկ գյուղատնտեսական աշխատանքը դառնալու է արդյունաբերական աշխատանքի տարատեսակը։ Այս առումով էլ մենք նպատակահարմար ենք համարում պարտիայի նոր Ծրագրի երկրորդ մասի երկրորդ պարագրաֆի (Պարտիայի խնդիրները ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման բնագավառում) վեցերորդ պարբերությունում գրել այսպես. «Զորակավորված բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների ավելի ու ավելի մեծ մասսաներ կորակավորվեն» ու այնուհետև ինչպես տեքստում։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման հիմնական աղբյուրն ազգային եկամտի աճն է։ Դրա համար էլ նախատեսվում է մոտակա 10 տարում ՍՍՌՄ-ի ազգային եկամտի ծավալն ավելացնել գրեթե երկու և կես անգամ, իսկ 20 տարում՝ մոտավորապես հինգ անգամ։ Այդ հիման վրա էլ բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները 20 տարում կաճեն ավելի քան երեք ու կես անգամ։ Առաջիկա 10 տարվա ընթացքում բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները (հաշվի առնելով հանրային ֆոնդերը), մեկ աշխատողին ընկնող միջին հաշվով, կավելանան գրեթե երկու անգամ, իսկ 20 տարում՝ մոտավորապես երեք-երեք ու կես անգամ։ Համեմատաբար պակաս վարձատրություն ստացող բանվորների և ծառայողների ռեալ եկամուտներն արդեն մոտակա տասնամյակում կհասցվեն այնպիսի մակարդակի, որ երկրում չեն մնա ցածր վարձատրվող բանվորներ ու ծառայողներ։ Նվազագույն աշխատավարձ ստացող բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները այդ ժամանակամիջոցում, հաշվի առնելով հանրային ֆոնդերը, կաճեն մոտավորապես երեք անգամ։

Բանվորների համեմատությամբ ավելի արագ կաճեն կոլտնտեսականների եկամուտները։ Նրանց աշխատանքի արտադրողականության աճի առավել արագ տեմպերի շնորհիվ, յուրաքանչյուր կոլտնտեսականի ռեալ եկամուտները, միջին հաշվով, մոտակա տասնամյակում կբարձրանան ավելի քան երեք անգամ, իսկ 20 տարվա ընթացքում՝ ավելի քան չորս անգամ։ Զգալիորեն կբարձրանա նաև սովետական ինտելիգենցիայի այնպիսի ստվար խավերի աշխատավարձը, ինչպիսիք են ինժեներներն ու տեխնիկները, գյուղատնտեսներն ու զոոտեխնիկները, ուսուցիչները, բժշկության ու կուլտուրայի աշխատողները։

Բնակչության եկամուտների աճին համապատասխան, ձեռք կբերվի ժողովրդական սպառման ընդհանուր մակարդակի արագ վերելք։ ՍՍՌՄ բոլոր



քաղաքացիները հնարավորություն կստանան լիովին բավարարելու իրենց պահանջմունքները բարձրորակ և բազմազան սննդի, ինչպես նաև լայն սպառման բարձրորակ ապրանքների ասպարեզում։ Մոտակա ժամանակներում ժողովրդական սպառման մեջ զգալիորեն կաճի անասնապահական մթերքների, մրգի ու բարձրորակ բանջարեղենի բաժինը։ Դրա լավագույն երաշխիքը կոլտնտեսությունների ու սովխոզների կողմից պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքի աճն է։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման մյուս ուղին սպառման հանրային ֆոնդերի հաշվին բնակչության անձնական պահանջմունքների բավարարումն է, որոնց աճման տեմպերը քսանամյակում կգերազանցեն ըստ աշխատանքի անհատական վարձատրության ավելացման տեմպերին։ Այդ ուղին հիմնականում ըստ պահանջմունքների բաշխման կոմունիստական ձևն է, որն ունի զարգացման ավելի լայն հեռանկարներ։ Այդ ուղու զարգացման համար Սովետական պետությունը հատկացնում է հսկայական միջոցներ, որի շնորհիվ էլ հանրային ֆոնդերը տարեցտարի աճում են։ Այսպես. 1940 թվականին դրանք կազմել են 4,2 միլիարդ ռուբլի, 1960 թվականին՝ 24,5 միլիարդ ռուբլի։ Քսանամյակի ընթացքում, բնակչության մեկ շնչի հաշվով, այդ ֆոնդերը 1960 թվականի համեմատությամբ կավելանան մոտավորապես 8 անգամ։ Այլ կերպ ասած, քսանամյակի վերջում, 1980 թվականին, սպառման հանրային ֆոնդերը ամբողջությամբ վերցրած կկազմեն բնակչության ռեալ եկամուտների ամբողջ գումարի մոտավորապես 50 տոկոսը։ Դա հնարավորություն կտա հասարակության հաշվին ապահովելու երեխաների ձրի խնամքը մանկական հիմնարկներում ու գիշերօթիկ դպրոցներում, քաղաքացիների ձրի բուժսպասարկումը և կրթությունը բոլոր ուսումնական հաստատություններում, բնակարաններից, կոմունալ ծառայություններից ու կոմունալ տրանսպորտից, կենցաղային սպասարկման որոշ տեսակներից ձրի օգտվելը, անաշխատունակների նյութապես բավարարումը, հանգստյան տների, պանսիոնատների, տուրիստական բազաների վարձի հետևողական իջեցումը և դրանց մասնակի անվճար օգտագործումը, նպաստներով, արտոնություններով ու թոշակներով բնակչությանը ավելի լայն ապահովելը, ձեռնարկություններում, հիմնարկներում և արտադրության մեջ զբաղված կոլտնտեսականների ձրի հասարակական սննդին (ճաշեր) աստիճանաբար անցումը և այլն։

Խոշոր միջոցառումներ կկիրառվի երեխաների երջանիկ մանկությունն ապահովելու համար։ Հետզհետե ավելի մեծ թվով ընտանիքներ, իսկ երկրորդ տասնամյակում յուրաքանչյուր ընտանիք, ըստ ցանկության, հնարավորություն կունենա երեխաներին ու դեռահասներին ձրի պահելու մանկական հիմնարկներում։ Մեծ մասշտաբներով կընդարձակվի մանկամսուրների, մանկապարտեզների, մանկահրապարակների, պիոներական ճամբարների, գիշերօթիկ դպրոցների ցանցը։ Բոլոր դպրոցականները կապահովվեն ձրի տաք նախաճաշով, ուսումնական պիտույքներով ու դպրոցական հագուստով և այլն։

Սպառման հանրային ֆոնդերի հաշվին այդպիսի լայն մասշտաբներով բնակչության նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարումը, անկախ նրանց աշխատանքի քանակից ու որակից, մեր պարտիայի, Սովետական պետության, կոմունիստական ամբողջ հասարակության իսկական մարդասիրությունն է։

Պարտիան իր նոր Ծրագրում խնդիր է դնում նաև լուծել ժողովրդի բարեկեցության բարձրացման ամենասուր պրոբլեմը՝ բնակարանային պրոբլեմը։ Երկրորդ տասնամյակի վերջում յուրաքանչյուր ընտանիք, ներառյալ նորապսակների ընտանիքները, կունենան առողջապահության և կուլտուրական կենցաղի պահանջներին համապատասխան բարեկարգ բնակարան։ Դրան մենք կհասնենք աստիճանաբար, տարեցտարի բնակարանաշինարարությունը ծավալելու և բնակֆոնդի բաշխման նորման ավելացնելու միջոցով։ Այդ ճանապարհով մեր ռեսպուբլիկայում 1965 թվականին բնակչության յուրաքանչյուր շնչին կհատկացվի 9,7 քառակուսի մետր, 1970 թվականին՝ 13,5 և 1980 թվականին՝ 16,5 քառակուսի մետր բնակելի տարածություն։

Դրա հետ միասին խոշոր աշխատանքներ կկատարվեն գյուղացիական հին տիպի տները նոր, ժամանակակից տներով փոխարինելու կամ վերակառուցելու, քաղաքներում ու բանվորական ավաններում կոմունալ շինարարությունն ու բարեկարգումը լայնորեն ծավալելու, բնակչության կոմունալ սպասարկումը բարելավելու ուղղությամբ։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի աշխատանքային ժամանակի կրճատումը, որն իր արտացոլումն է գտել ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում։ Այնտեղ նշված է. «Առաջիկա տասը տարվա ընթացքում կիրագործվի անցում վեց ժամյա աշխատանքային օրվա՝ շաբաթական մեկ հանգստյան օրով, կամ 34—36-ժամյա աշխատանքային շաբաթի՝ երկու հանգստյան օրով, իսկ ստորերկրյա աշխատանքներում և վնասակար արտադրություններում՝ հինգժամյա աշխատանքային օրվա կամ 30-ժամյա հնգօրյա աշխատանքային շաբաթի։

Երկրորդ տասնամյակում՝ աշխատանքի արտադրողականության համապատասխան աճի բազայի վրա, կսկսվի անցում էլ ավելի կրճատ աշխատանքային շաբաթի»։

Այդ խնդրի կենսագործման շնորհիվ Սովետական Միությունը կդառնա աշխարհի ամենակարճ, ամենաարտադրողական ու առավել բարձր վարձատրվող աշխատանքային օրվա երկիր։ Մեր աշխատավորները կունենան բավականին ազատ ժամանակ, որը լրացուցիչ պայմաններ կստեղծի նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման համար։ Ազատ ժամանակի մեծ չափով ավելացում տեղի կունենա ինչպես աշխատանքային օրվա, այնպես էլ ժամանակի այն բաժնի կրճատման հաշվին, որ մարդիկ օգտագործում են տնտեսական ու կենցաղային կարիքների բավարարման համար։

Բնակչության ապրուստի պայմանները բարելավելու նպատակով խոշոր միջոցառումներ են իրականացվելու նաև հասարակական սննդի ցանցն ամենուրեք ընդլայնելու և ընդհուպ մինչև բնակչության լրիվ պահանջմունքների բավարարումն ապահովելու համար։ Արմատապես կբարելավվի սպառողների սպասարկումը և ճաշարանների արտադրանքի որակը, ճաշարանների ճաշերը ավելի համեղ, սննդարար ու էժան կլինեն, քան տներում պատրաստվող կերակուրները։ Հասարակական սննդի արտադրանքի գների իջեցումը առաջ կանցնի առևտրի ցանցում պարենամթերքների գների իջեցումից։ Այս ամենի շնորհիվ հասարակական սնունդը 10—15 տարվա ընթացքում կկարողանա գերակշռող տեղ գրավել տնային սննդի համեմատությամբ։

Պարտիայի նոր Ծրագրի նախագծում նշված է, որ բոլոր բանվորների և ծառայողների նվազագույն արձակուրդի տևողությունը աստիճանաբար կբարձ-



րացվի և հետագայում կհասցվի մեկ ամսվա։ Միաժամանակ նշված է, որ «Վճարովի արձակուրդները հետզհետե կտարածվեն կոլտնտեսականների վրա»։ Մեզ թվում է, որ վճարովի արձակուրդներ պետք է սահմանել միայն այն կոլտնտեսականների համար, որոնք ամբողջ տարին աշխատում են կոլտնտեսային արտադրության մեջ։ Այս առաջարկությունն անելիս մենք նկատի ունենք այն հանգամանքը, որ շատ շրջաններում ու ռեսպուբլիկաներում դաշտավարության բնագավառում զբաղված կոլտնտեսականներից շատերը ձմռան երկար ամիսներին ազատ են մնում և հարկ չկա, որ նրանց վճարովի արձակուրդ տրվի։

ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում խոշոր միջոցառումներ են նշված ժողովրդի առողջության, կյանքի տևողության երկարացման, ընտանիքի կենցաղային պայմանների և կնոջ դրության բարելավման, անաշխատունակների խնամքը հասարակության հաշվին ապահովելու գործում և այլն։

Նախատեսվում է լրիվ վերացնել կենցաղում կնոջ անհավասար դրության մնացուկները, ստեղծել սոցիալ-կենցաղային բոլոր պայմանները երջանիկ մայրության, հասարակական աշխատանքին ու հասարակական գործունեությանը, գիտության ու արվեստի բնագավառներին կանանց ավելի ու ավելի լայն մասնակցությանը։ Դրանց հետ միասին կանանց տրվելու են համեմատաբար ավելի թեթև և բավարար չափով վարձատրվող աշխատանքներ, թեթևացվելու ու կրճատվելու են տնային տնտեսության մեջ նրանց կատարած աշխատանքը և այլն։ Այդ բոլորով հանդերձ, մենք նպատակահարմար ենք գտնում, որպեսզի 1—7 տարեկան երկու և երկուսից ավելի երեխա ունեցող մայրերի համար, տղամարդկանց համեմատությամբ, սահմանվի մեկից-երկու ժամ պակաս աշխատանքային օր, պահպանելով հիմնական վարձատրության չափը։ Նպատակահարմար է նաև, որ այդ կատեգորիայի բոլոր կանանց արձակուրդը առաջին տասնամյակում հասցնել մեկ ամսվա։

Այս առաջարկությունն անելով մենք ելնում ենք այն բանից, որ, չնայած մանկական հիմնարկների ներկայիս և հետագայում ընդլայնվող մեծ ցանցին, նախադպրոցական հասակի երեխաները, այնուամենայնիվ, տանը պահանջում են բավականին խնամք, որը տնային գործերի և հիմնական աշխատանքի հետ միասին ծանրաբեռնվածություն է առաջացնում մոր համար։

Իր նոր Ծրագրում ՊԱՐՏԻԱՆ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ԿԵՐՊՈՎ ՀՌՉԱԿՈՒՄ Է՝ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ՆԵՐԿԱՅԻՍ ՍԵՐՈՒՆԴԸ ԿԱՊՐԻ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՕՐՈՔ. դա ամեն մի բանվորի, կոլտնտեսականի, գիտության ու կուլտուրայի գործչի, մեր բոլոր աշխատավորների սրտերը լցնում է բերկրանքով, նրանց մոբիլիզացնում հանուն հարազատ պարտիայի հոյակապ Ծրագրում նախատեսված վիթխարի խնդիրների կենսագործման։ Նրանք քաջ գիտեն, որ պարտիայի խոսքը՝ գործ է, որ նա, ժողովրդի հետ սերտ միասնություն կազմած, անպայմանորեն կապահովի իր նոր Ծրագրի կատարումը՝ կոմունիստական հասարակության կառուցումը, ուր սովետական մարդիկ կունենան աշխարհում ամենաբարձր կենսամակարդակը։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՊԱՐՏԻԱՅԻ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ

«Կոմունիստական հասարակարգի կառուցումը դարձել է սովետական ժողովրդի անմիջական գործնական խնդիրը»։ Այս խոսքերով պարտիայի նոր Ծրագրի նախագիծն ազդարարում է Սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման նոր ժամանակաշրջանի՝ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու սկզբի մասին։ Բայց նախագծի մեծագույն պատմական նշանակությունն առաջին հերթին այն է, որ նա հանդիսանում է Սովետական Միությունում սոցիալիզմի կառուցման վիթխարի փորձի գիտական ընդհանրացումը, մեր դարաշրջանի մարքս-լենինյան հետևողական վերլուծումը և այն խնդիրների ուրվագծումը, որոնք կանգնած են ինչպես համաշխարհային բանվորական շարժման առջև, այնպես էլ սովետական ամեն մի աշխատավորի առջև՝ կոմունիզմի համար նրա պայքարում։ Դա գործողությունների գիտականորեն հիմնավորված ծրագիր է, աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման ծրագիր։

Նախագծի առաջին մասի երկրորդ գլխում բացահայտված է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակությունը և ամփոփված է ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի փորձը, որ կենսականորեն անհրաժեշտ է ինչպես սոցիալիզմ կառուցող, այնպես էլ սոցիալիստական ռևոլյուցիայի առաջ կանգնած բոլոր երկրների համար։ Ուստի և մենք պետք է ջանանք, որ արված հետևությունները լրիվ լինեն։ Այս նպատակով առաջարկում եմ եղած հետևություններին ավելացնել երկուսը ևս, որոնք մեր կարծիքով կարևոր են։

1. ՍՍՌՄ փորձն ապացուցել է, որ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար պարտադիր չէ, որ պրոլետարիատը երկրի բնակչության մեծամասնությունը կազմի։ Դրա համար անհրաժեշտ է, որ բանվոր դասակարգի պարտիան գաղափարապես-կազմակերպորեն ամրապինդ լինի, ռևոլյուցիայի կողմը գրավի բնակչության աշխատավոր մասը, ինչպես և համապատասխան ռևոլյուցիոն իրադրություն լինի։

Ծրագրի մեջ այսպիսի կետ մտցնելն անհրաժեշտ է նախ նրա համար, որ այն ամփոփում է Լենինի մղած պայքարը Կ. Կաուցկու և նրա համախոհների դեմ այս նույն հարցի վերաբերյալ, ապացուցելով Հոկտեմբերյան ռևոլյուցիայի օրինաչափությունը, և երկրորդ, այն պատճառով, որ այն անհրաժեշտ է ետ մղելու համար աջ սոցիալիստների հարձակումը կոմունիստական շարժման վրա, մասնավորապես կապիտալիզմի թույլ զարգացած երկրներում։

2. ՍՍՌՄ փորձն ապացուցել է, որ սոցիալիզմի երկիրն ամբողջ աշխարհի պրոլետարիատի Հայրենիքն է, ուստի և նա բոլոր միջոցներով օգնում է կեղեքվող ժողովուրդներին՝ հաղթանակ տանելու կապիտալիզմի նկատմամբ։



Ծրագրի մեջ այդպիսի կետ մտցնելն անհրաժեշտ է նախ նրա համար, որ դա արձանագրումը կլինի այն ինտերնացիոնալ օգնության, որ ցույց տվին մեզ Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի և այլ կապիտալիստական երկրների բանվորները, մասնավորապես քաղաքացիական պատերազմի տարիներին, հակառևոլյուցիայի դեմ մեր մղած պայքարում, երկրորդ, նրա համար, որ դա կլինի աշխարհի ամեն մի երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի ինտերնացիոնալ բնույթի բացահայտումն ու ընդգծումը։ Էլ չեմ խոսում այն մասին, թե այդ հարցին ինչպիսի խոշոր նշանակություն էին տալիս Մարքսը, Էնգելսն ու Լենինը պրոլետարական ռևոլյուցիայի մասին խոսելիս։

Այնուհետև առաջարկում եմ հաջորդ գլխի հետևության երրորդ կետը ձևակերպել հետևյալ ձևով.

«ՍՍՌՄ փորձն ապացուցել է, որ բանվոր դասակարգը նոր հասարակություն ստեղծողի իր պատմական միսիան կարող է կատարել դաշինք կնքելով ոչ-պրոլետարական աշխատավոր մասսաների հետ, առաջին հերթին գյուղացիության հետ, որ գյուղացիությունը սոցիալիզմի համար մղվող պայքարում ընթանում է բանվոր դասակարգի հետ»։ Տվյալ կետի այս ձևակերպման մեջ նոր է միայն վերջին նախադասությունը։ Դրա Ծրագրի մեջ մտցնելն անհրաժեշտ է՝ նպատակ ունենալով բացահայտել այն ռեալ հիմքը, որ գոյություն ունի բանվորների և գյուղացիների հաստատուն դաշինքի համար՝ կապիտալիզմի դեմ մղվող նրանց պայքարում։

Ծրագրի առաջին մասի յոթերորդ գլխում տրված է բուրժուական գաղափարախոսության արդի վիճակի վերլուծությունը և Կոմունիստական պարտիայի արմատական խնդիրների բնորոշումներն այն պայքարում, որ նա մղում է բուրժուական աշխարհայացքի և ռեֆորմիզմի, որպես բուրժուական գաղափարախոսության մի ձևի դեմ։ Հատուկ ուշադրություն դարձնելով ֆաշիզմի, շովինիզմի, կղերամտության ռեակցիոն էության և այն գաղափարի մերկացման վրա, թե իբր բուրժուական հասարակարգը «Համընդհանուր բարօրության պետություն» է, Ծրագրի նախագիծը նշում է այն ուղին, որով ընթանալով կոմունիստները կարող են ժողովրդական մասսաներին, մասնավորապես գաղութային երկրների ժողովրդական մասսաներին օգնել նոր հաջողություններ հասնելու իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։ Բայց այդ նույն գլխում կան երկու ձևակերպում, որոնք, մեր կարծիքով, անհրաժեշտ է ճշգրտել։

1. Նախագծում գրված է. «...բուրժուական ուսմունքները և դպրոցները չդիմացան պատմական ստուգմանը»։ Բայց, ինչպես հայտնի է, բուրժուազիայի ներկայացուցիչները շատ ուսմունքներ ու դպրոցներ են ստեղծել՝ փիլիսոփայական, բնագիտական, բարոյագիտական, գեղագիտական և այլն։ Այս ուսմունքներից ու դպրոցներից որո՞նց է վերաբերում խոսքը։ Բերված ձևակերպման մեջ բավականաչափ պարզություն չկա։ Իսկ դա կարող է զանազան թյուրիմացություններ առաջացնել։ Դրանից խուսափելու համար լավ կլինի այդ միտքը ձևակերպել հետևյալ կերպ. «Բուրժուական սոցիալ-քաղաքական ուսմունքները և փիլիսոփայական դպրոցները չդիմացան պատմական ստուգմանը»։ Այսպիսի ձևակերպումը, օրինակ, բուրժուական բնախույզներին հնարավորություն է տալիս հասկանալու, որ կոմունիստները ժխտում են ոչ թե նրանց գիտությունը, այլ՝ իդեալիստական փիլիսոփայությունը, որից ազատվելով՝ նրանք կարող են նորանոր խոշոր հաջողությունների հասնել բնության ու նրա օրինաչափությունների ուսումնասիրման բնագավառում։

2. Ծրագրի նախագծում գրված է. «Իմպերիալիզմի գաղափարական քաղաքական գլխավոր զենքը հակակոմունիզմն է, որի հիմնական բովանդակությունն է սոցիալիստական կարգերը զրպարտելը, կոմունիստական պարտիաների քաղաքականությունն ու նպատակները, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը կեղծելը»։ Սակայն հարցի հետագա շարադրումն ապացուցում է, որ հակակոմունիզմի «հիմնական բովանդակությունն» են ֆաշիզմը, շովինիզմը, կղերամտությունը և նման այլ «տեսությունները», որոնք «արտացոլում են բուրժուական գաղափարախոսության դեգրադացիայի ծայրահեղ աստիճանը», իսկ «զրպարտելը», «կեղծումը» հանդիսանում են առաջադրված նպատակին հասնելու հիմնական միջոցներ։ Սրանք առաջին պլանի վրա դնելը հարցը հասարակացնում է, այնինչ Ծրագրում նախ պետք է ճշգրիտ սահմանել այն գաղափարը, որն արդի բուրժուազիան ընդունակ է հակադրելու կոմունիզմին, իսկ հետո արդեն մերկացնել այն մեթոդների անպետքությունը, որոնցով նա ջանում է ապացուցել իր գաղափարի գերազանցությունը։

Մարքսին ուղղած իր նամակում Էնգելսը գրել է. «Էգոիզմը միայն արդի հասարակության և արդի մարդու իրեն գիտակցած էությունն է, վերջինը, որ արդի հասարակությունը կարող է ասել մեր դեմ, ամեն տեսակի տեսության գագաթնակետը՝ գոյություն ունեցող հիմարության սահմաններում» (Մարքս և Էնգելս, ռուս. հրատ., Երկեր, հատոր 21, էջ 6)։

Ես կարծում եմ, որ Էնգելսի այս դրույթը դեռ այժմ էլ պահում է իր ուժը։ Բոլոր բուրժուական ուսմունքների էությունը ծայրահեղ ինդիվիդուալիզմն է, շահագործող դասակարգի ծայրահեղ էգոիզմի պաշտպանությունը։ Բոլոր այն սոցիալ-քաղաքական ու փիլիսոփայական ուսմունքները, որ արդի բուրժուական հասարակությունը հակադրում է սոցիալիզմ-կոմունիզմին, բուրժուական էգոիզմի տարատեսակներն են։ Ուստի և ավելի ճիշտ կլինի հիշատակված միտքը ձևակերպել այսպես. «Իմպերիալիզմի գաղափարական-քաղաքական գլխավոր զենքը հակակոմունիզմն է, որի հիմնական բովանդակությունն է բուրժուական ծայրահեղ էգոիզմը, որ պրոպագանդվում է սոցիալիստական հասարակարգը զրպարտելու, կոմունիստական պարտիաների քաղաքականության ու նպատակների, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի կեղծման միջոցով»։

Ծրագրի նախագծի երկրորդ մասի առաջին գլխի առաջին կետում սահմանված են արդյունաբերության զարգացման կոնկրետ խնդիրները և ցույց է տրված նրա դերը կոմունիզմի արտադրողական ուժեր ստեղծելու գործում։ «Կոմունիզմի ծավալուն կառուցումը,— ասված է այնտեղ,— պահանջում է արդյունաբերության ավելի ռացիոնալ տեղաբաշխում, որը կապահովի հանրային աշխատանքի տնտեսումը... և նրանց տնտեսությունների մասնագիտացումը, կվերացնի բնակչության չափից դուրս կուտակվածությունը խոշոր քաղաքներում, կնպաստի քաղաքի և գյուղի էական տարբերությունների հաղթահարմանը, երկրի շրջանների տնտեսական զարգացման մակարդակի հետագա համահարթմանը»։ Անհասկանալի է մնում, նախ, թե ինչպես պիտի վերացվի բնակչության չափից դուրս կուտակվածությունը խոշոր քաղաքներում, եթե այդ քաղաքների վերացման հարց չի դրվում, և երկրորդ, ինչպե՞ս պետք է համահարթվեն երկրի շրջանների տնտեսական զարգացման մակարդակները, եթե գյուղը պահպանվում է, վերացվում են միայն նրա և քաղաքի միջև եղած էական տարբերությունները։ Այս հակասությունները վերացնելու համար անհրաժեշտ է բերված պարբերությունը վերախմբագրել, ելնելով այն



դրույթից, որ անհրաժեշտ է վերացնել ժամանակակից խոշոր քաղաքները և քաղաքն ու գյուղը միաձուլել, ինչպես այդ առաջարկում է Էնգելսը։ Կոմունիզմն անհամատեղելի է մարդկանց համակեցության այդ երկու ձևերի պահպանման հետ, որոնք ծագել են մասնավոր սեփականության բազայի վրա։

Ծրագրի նախագծի երկրորդ մասի երրորդ գլխի առաջին կետում ասված է. «Նպատակահարմար է սահմանել սկզբունք, որի համաձայն ընդհանուր միութենական, ռեսպուբլիկական և տեղական օրգանների ղեկավար աշխատողները կարողանային իրենց պաշտոններում ընտրվել, որպես կանոն, ոչ ավելի, քան երեք պարբերաշրջան անընդհատ»։ Մենք կարծում ենք, որ երկու անգամը լիովին բավական է, քանի որ մեր ժողովուրդը բոլոր տեսակետներից այնքան է աճել, որ դժվար չի լինի նոր ղեկավարներ առաջ քաշել ներքևից։ Ուստի մենք ավելորդ ենք համարում որևէ բացառություն անել վերը բերված կանոնից։ Պետք է հաշվի առնել և այն հանգամանքը, որ այդպիսի բացառությունները կարող են հասցնել սոցիալիստական դեմոկրատիայի խախտման։

Ծրագրի նախագծի երկրորդ մասի հինգերորդ գլուխը պարտիայի խնդիրների փայլուն շարադրանքն է գաղափարախոսության, դաստիարակության, կրթության, գիտության ու կուլտուրայի բնագավառում։ Սակայն այդ գլխի առաջին կետում տրված աշխարհայացքի բնորոշումը չի կարելի լիովին ճշգրիտ համարել։ Այնտեղ ասված է. «...առաջնակարգ նշանակություն է ստանում հասարակության բոլոր աշխատավորների գիտական աշխարհայացքի ձևավորումը։ Այդ աշխարհայացքի գաղափարական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է...»։

Խնդիրը միանգամայն ճիշտ է բնորոշված։ Բայց այս ձևակերպումից բխում է, որ գիտական աշխարհայացքը մի բան է, իսկ մարքսիզմ-լենինիզմը՝ մի այլ բան, որովհետև գաղափարական հիմքը նույնական չէ բուն աշխարհայացքի հետ։ Օրինակ, սոցիալիստական գեղագիտական աշխարհայացքի գաղափարական հիմքը մարքսիզմ-լենինիզմն է, բայց սրանից չի բխում, թե դրանք նույնական են։ Իսկ ընդունել որևէ առանձին գիտական աշխարհայացքի գոյություն, որի համար մարքսիզմ-լենինիզմը սոսկ գաղափարական հիմք է հանդիսանում՝ սխալ կլինի։ Բանն այն է, որ այդպիսի աշխարհայացք ընդհանրապես գոյություն չունի։ Կա մեկ գիտական աշխարհայացք՝ մարքսիզմ-լենինիզմը։ Ուստի և հիշյալ կետը պետք է ձևակերպել հետևյալ ձևով. «Առաջնակարգ նշանակություն է ստանում հասարակության բոլոր աշխատավորների գիտական աշխարհայացքի ձևավորումը, այսինքն՝ մարքսիզմ-լենինիզմի խոր յուրացումը նրանց կողմից»։

Ծրագրի նախագծում մեր ժողովուրդների միասնությունը բնորոշված է որպես սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնություն։ Մենք գտնում ենք, որ դա միանգամայն ճիշտ է, որովհետև հանդիսանում է իրականության արտացոլումը, նրա մարքսիստական իմաստավորումը։ Դրա համար էլ առաջարկում ենք պարտիայի Կանոնադրության նախագիծն այս հարցում համաձայնեցնել Ծրագրի նախագծի հետ։ Կանոնադրության նախագծում ասված է. «Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ Սովետական Միությունում վերացվեցին շահագործող դասակարգերը, ստեղծվեց և ամրապնդվեց սովետական հասարակության բարոյական ու քաղաքական միասնությունը»։ Որ մեզ մոտ շահագործողներ չկան, և ստեղծված է մեր ժողովուրդների քաղա-

քական լիակատար միասնություն՝ այդ միանգամայն ճիշտ է, բայց բարոյական միասնության մասին հազիվ թե կարելի է նույնն ասել։

Չէ՛ որ մեր հասարակությունը դեռ դասակարգային է, հին հասարակության մնացուկները դեռևս պահպանվել են մեր էկոնոմիկայում, ինչպես և մեր բնակչության մի որոշ մասի բարոյական ու մտավոր բնագավառներում։ Ուստի ավելի ճիշտ կլինի, եթե Կանոնադրության նախագծում «բարոյական միասնությունը» փոխարինվի «սոցիալական միասնությամբ»։ Սա գիտական կլինի, որովհետև համապատասխանում է իրականությանը։

Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ
Երևանի Պետական համալսարանի
փիլիսոփայության ամբիոնի վարիչ,
դոկտոր-պրոֆեսոր։

«ԿՅԱՆՔԻ ԱՌԱՋ ՔԱՇԱԾ ՆՈՐ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԻ ՏԵՍԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՄԸ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԻՆ ՊՐԱԿՏԻԿ ԼՈՒԾՈՒՄԸ ԴԵՊԻ ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆՆ Է։ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ԱՌԱՋԻԿԱՅՈՒՄ ԵՎՍ ՊԵՏՔ Է ԼՈՒՍԱՎՈՐԻ ՊՐԱԿՏԻԿԱՅԻ ՈՒՂԻՆ, ՕԳՆԻ ԱՅՆ ԴԺՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԲԱՑԱՀԱՅՏԵԼՈՒՆ ՈՒ ՀԱՂԹԱՀԱՐԵԼՈՒՆ, ՈՐՈՆՔ ԽԱՆԳԱՐՈՒՄ ԵՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՋՈՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆԸ։ ՊԱՐՏԻԱՆ ԻՐ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ Է ՀԱՄԱՐՈՒՄ ԷԼ ԱՎԵԼԻ ԶԱՐԳԱՑՆԵԼ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ ԵՂԱԾ ՆՈՐ ԵՐԵՎՈՒՅԹՆԵՐԻ ԵՎ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԵՎ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՓՈՐՁԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՈՒ ԸՆԴՀԱՆՐԱՑՄԱՆ ՀԻՄԱՆ ՎՐԱ, ՏԵՍՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԶՈՒԳՈՐԴՈՒՄԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՊՐԱԿՏԻԿԱՅԻ ՀԵՏ։

**(ՍՄԿՊ ՆՈՐ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԾԻՑ)**

# ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻ ՆԱԽԱԳԻԾԸ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՄԱՐՄՆԱՑՈՒՄՆ Է

Ամբողջ սովետական ժողովուրդը, նրա հետ միասին և սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդները խանդավառությամբ դիմավորեցին հուլիսի 30-ին հրապարակված արդիականության մեծագույն փաստաթուղթը՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախագիծը, որի մեջ շարադրված են դեպի կոմունիզմ ընթացող մեր Հայրենիքի զարգացման հոյակապ հեռանկարները։ Սովետական մարդիկ հպարտանում են իրենց սոցիալիստական տերությամբ, որը լենինյան պարտիայի իմաստուն ղեկավարությամբ առաջինն է ճանապարհ բացում դեպի մարդկության մեծ ու նվիրական երազանքը, դեպի կոմունիզմ։

«Նոր Ծրագրի նախագիծը,—ասել է Ն. Ս. Խրուշչովը 1961 թ. օգոստոսի 7-ին ռադիոյով և հեռուստատեսությամբ ունեցած իր ելույթում,— տոգորված է կոմունիստական ստեղծագործության, խաղաղասիրության ու ինտերնացիոնալիզմի ոգով։ Բոլոր երկրների մեր բարեկամները, սոցիալիստական և կապիտալիստական երկրների եղբայրական մարքսիստական-լենինյան պարտիաները հավանություն են տալիս Ծրագրի նախագծին, ընդգծում են նրա պատմական նշանակությունը միջազգային կոմունիստական և բանվորական շարժման համար։ Նրանք Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը համարում են մեր դարաշրջանի աչքի ընկնող փաստաթուղթը, խոշոր ավանդ մարքս-լենինյան տեսության զարգացման գործում»։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծը տոգորված է ինտերնացիոնալիզմի ոգով, ժողովուրդների անխախտ բարեկամության սկզբունքով։ Այդ մասին ասված է, որ անհրաժեշտ է. «...այսուհետև էլ հետևողականորեն կիրառել ինտերնացիոնալիզմի սկզբունքները ազգային հարաբերությունների ասպարեզում, ամրապնդել ժողովուրդների բարեկամությունը՝ որպես սոցիալիզմի կարևորագույն նվաճումներից մեկը. անհաշտ պայքար մղել ամեն տեսակ նացիոնալիզմի և շովինիզմի դրսևորումների ու մնացուկների դեմ, ազգային սահմանափակության և բացառիկության, անցյալի իդեալականացման և ժողովուրդների պատմության մեջ սոցիալական հակասությունների սքողման տենդենցների դեմ...» («Լենինյան ուղիով» № 8, էջ 88)։

Վ. Ի. Լենինն իր բազմաթիվ հոդվածներում ու ելույթներում բազմիցս նշել է, որ ինտերնացիոնալիզմը մարքսիստական պարտիայի մարտական դրոշն է։

Ավելի քան 113 տարի է անցել այն ժամանակից, երբ Կ. Մարքսն ու Ֆ.

էնգելսը գիտական կոմունիզմի առաջին ծրագրային փաստաթղթում՝ «Կո-
մունիստական պարտիայի մանիֆեստ»-ում հռչակեցին պրոլետարական ին-
տերնացիոնալիզմի լոզունգը՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»: Գի-
տական կոմունիզմի հիմնադիրներն ուսուցանում էին, թե տարբեր երկրների
բանվորների կենսական շահերի ընդհանրությունը թելադրում է ինտերնացիո-
նալ համախմբում և միասնական պայքար միջազգային բուրժուազիայի դեմ:
Այդ ժամանակից մարքսիզմ-լենինիզմը հարստացել է բոլոր երկրների բան-
վոր դասակարգի հանուն սոցիալիզմի մղած պայքարի համաշխարհային-
պատմական փորձով և վիթխարի հաղթանակների է հասել: Այդ հաղթանակ-
ները մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզ-
բունքներին հավատարիմ մնալու արդյունք են:

ՍՄԿՊ-ի, միջազգային կոմունիստական շարժման ամբողջ փորձը հաս-
տատեց մարքսիստական-լենինյան պարտիայի զարգացման այն օրինաչա-
փությունը, որ նա սոցիալիզմի համար մղած պայքարում կարող է հաջողու-
թյունների հասնել և՛ թեորիայում, և՛ իր պրակտիկ գործունեության մեջ՝ հայ-
րենասիրությունը հետևողականորեն զուգակցելով պրոլետարական ինտերնա-
ցիոնալիզմի սկզբունքի, ամբողջ աշխարհի աշխատավորների ու ճնշվածների
գործին ծառայելու հետ: Ահա հենց այդպիսի պարտիա է ՍՄԿՊ-ն, որի դրոշն
ինտերնացիոնալիզմն է: Սովետական Միության Կոմունիստական պարտիան
իր ազգային քաղաքականության մեջ կենսագործել ու կենսագործում է մեծ
Լենինի այն ցուցումները, որ անհրաժեշտ է ամրապնդել ժողովուրդների բա-
րեկամությունը, աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենա-
սիրության ոգով, զուգակցելով այդ պրոլետարական ինտերնացիոնալիզմի
հետ, պայքարելով մեծապետական շովինիզմի և տեղական նացիոնալիզմի
դեմ:

Իր ամենօրյա քաղաքական աշխատանքով մեր պարտիան սովետական
մարդկանց դաստիարակում է սոցիալիստական Հայրենիքին նվիրվածության ու
անձնվիրաբար ծառայելու ոգով և միևնույն ժամանակ՝ պրոլետարական ին-
տերնացիոնալիզմի ոգով, բոլոր ռասաների ու ազգությունների աշխատավորու-
թյան նկատմամբ, նրանց աշխատանքի ու կուլտուրայի նկատմամբ խորին
հարգանք տածելու ոգով: Հենց սրա մեջ է սովետական սոցիալիստական հայ-
րենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի միասնությունը:

***

Արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունն է՝ անցումը կապի-
տալիզմից սոցիալիզմին, երկու հակադիր սիստեմների պայքարը, ազգային-
ազատագրական ռևոլյուցիաների ուժեղացումը, գաղութային սիստեմի վե-
րացումը:

Մեր երկրի համար դա կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանա-
կաշրջան է, որ նշանակում է նոր փուլ ՍՍՌՄ-ում ազգային հարաբերություն-
ների զարգացման մեջ: «ՍՍՌՄ-ում կոմունիզմի հաղթանակի շնորհիվ,—
ասված է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում,—տեղի կունենա ազգերի էլ ավելի մեր-
ձեցում, կաճի նրանց տնտեսական ու գաղափարական ընդհանրությունը,
կզարգանան նրա՛նց հոգևոր կերպարի կոմունիստական ընդհանուր գծերը...
Կոմունիստական շինարարության ընթացքում ծառացող ազգային փոխհարա-



բերությունների բոլոր հարցերը պարտիան լուծում է պրոլետարական ինտեր-
նացիոնալիզմի դիրքերից, լենինյան ազգային քաղաքականության անշեղ
կիրառման հիման վրա»:

Ի հակադրություն II Ինտերնացիոնալի պարտիաների, որոնք խոսքով ին-
տերնացիոնալիզմի կոչ անելով իրականում կանգնած են ազգային էգոիզմի,
մեշչանական նացիոնալիզմի դիրքերում, Վ. Ի. Լենինը և նրա ստեղծած Կո-
մունիստական պարտիան պրոլետարական ինտերնացիոնալիզմը հասկանում
էին և հասկանում են որպես մեկ երկրի պրոլետարիատի պայքարի շահերը
միջազգային բանվորական շարժման շահերի հետ անխզելիորեն զուգակցելու
պարտականություն:

«Գործով ինտերնացիոնալիզմը մեկ և միայն մեկ է՝ անձնվեր աշխատանք
իր երկրում ռևոլյուցիոն շարժումն ու ռևոլյուցիոն պայքարը զարգացնելու հա-
մար, նույնպիսի պայքարին և նույնպիսի գծին աջակցելու համար (պրոպա-
գանդայով, համակրանքով, նյութապես), և միմիայն այդ պայքարին աջակցե-
լու համար առանց բացառության բոլոր երկրներում: Բոլոր մնացածը խա-
բեություն է և մանիլովշչինա»,—գրել է Վ. Ի. Լենինը (Երկեր, հ. 24, էջ 72):

Եվ բոլշևիկները միջազգային պրոլետարիատի հանդեպ իրենց ինտերնա-
ցիոնալ պարտքը կատարելու բարձր օրինակներ ցույց տվին:

Համաշխարհային իմպերիալիզմին չհաջողվեց խեղդել առաջին սոցիալիս-
տական պետությունը: Եվ այդ բանում Ռուսաստանի աշխատավորությանը վիթ-
խարի օգնություն ցույց տվին կապիտալիստական երկրների բանվորները,
որոնք բռնում էին իրենց կառավարությունների ձեռքը, երբ նրանք ինտերվեն-
ցիա էին ծավալում Սովետական Ռուսաստանի դեմ: Ի դեմս մեր երկրի,
նրանք ճնշողների դեմ իրենց պայքարի պատվարն էին տեսնում: Հենց միայն
Սովետական պետության գոյության փաստը, որի համար բանվոր դասակարգն
ու նրա պարտիան, Ռուսաստանի բոլոր աշխատավորներն անհամար զոհաբե-
րություններ արին, ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության հաջողու-
թյունները ՍՄԿՊ-ի և սովետական ժողովրդի ամենահզոր ու իրական աջակ-
ցությունն էին միջազգային պրոլետարիատին, կապիտալիզմի կողմից ստրը-
կացված երկրների աշխատավորներին: Արտասահմանյան երկրների կոմ-
պարտիաներն ու բանվոր դասակարգն էլ իրենց հերթին աշխարհում առաջին
սոցիալիստական պետության պաշտպանությունը, բոլոր մատչելի միջոցներով
նրան աջակցելը համարում էին իրենց սրբազան պարտականությունը:

Կոմունիստական պարտիան մեր երկրի ազգերի աշխատավորներին հա-
մախմբել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո, բոլոր ան-
հրաժեշտ պայմաններն ապահովել նրանց եղբայրական համագործակցու-
թյան համար՝ միասնական միութենական պետության սիստեմի մեջ: Սովե-
տական իշխանության տարիներին այդ ուղղությամբ Կոմունիստական պար-
տիան հսկայական աշխատանք է կատարել, որի նպատակն է եղել սոցիալիս-
տական ազգերի ըստ ամենայնի զարգացումը, տնտեսական ու կուլտուրական
բարգավաճումը, բարեկամության ամրապնդումը Սովետական Միության բո-
լոր ժողովուրդների միջև: Մեր երկրում ընդմիշտ վերացված է ժողովուրդների
անհավասարությունը, որ ժառանգություն էր մնացել հին աշխարհից: Մեր
Հայրենիքի ժողովուրդների եղբայրական բարեկամությունն ու համագոր-
ծակցությունը ձեռք են բերվել շնորհիվ լենինյան իմաստուն քաղաքականու-
թյան, մի քաղաքականություն, որ հիմնված է պրոլետարական ինտերնացիո-

նալիզմի սկզբունքի վրա։ Անդրկովկասի ու Միջին Ասիայի ռեսպուբլիկաների,
Հյուսիսի փոքր ժողովուրդների և անցյալում տնտեսապես ու հոգեպես սոցի-
կացված այլ ժողովուրդների ձեռք բերած խոշոր նվաճումները սոցիալիստա-
կան էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման բնագավառում ոգևորիչ օրի-
նակ են հանդիսանում կապիտալիստական աշխարհի բոլոր աշխատավորների
համար։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հզոր ուժն առանձնապես ցայտուն
կերպով երևաց ֆաշիստական Գերմանիայի դեմ մղված կռվի տարիներին։ Սո-
վետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով
դաստիարակված սովետական բազմազգ ժողովուրդը երկրորդ համաշխարհա-
յին պատերազմի տարիներին ոչ միայն պաշտպանեց իր ազատությունն ու
անկախությունը, այլև վճռական օգնություն ցույց տվեց լեհերին, չեխերին,
հունգարացիներին, ռումինացիներին, բուլղարացիներին, ալբանացիներին,
հարավսլավացիներին և Եվրոպայի այլ ժողովուրդների, որոնք պայքարում էին
ֆաշիստական ստրկացնողների դեմ։ Իր հերթին կապիտալիստական երկրների
աշխատավորների անձնուրաց պայքարը, որ մղում էին նրանք կոմունիստա-
կան պարտիաների գլխավորությամբ ընդդեմ գերմանական ու ճապոնական
օկուպանտների, դյուրացնում էր սովետական ժողովրդի պայքարը։

Սոցիալիզմի կառուցման ուղիով ընթացող ժողովրդական դեմոկրատիայի
երկրների երևան գալը իր համաշխարհային-պատմական նշանակությամբ
աշխարհի ժողովուրդների պատմության մեջ երկրորդ խոշոր իրադարձությունն
էր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո։ Երկրորդ համ-
աշխարհային պատերազմի հետևանքով կապիտալիզմի սիստեմն էլ ավելի
թուլացավ։ Ծնունդ առավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Սոցիալիս-
տական լագերի պետությունների միջև սահմանվեց հարաբերությունների մի
նոր տիպ, որ հիմնված է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, լիակատար
իրավահավասարության և պետական անկախության ճանաչման սկզբունքի
վրա։

Խաղաղության համար, միլիոնավոր հասարակ մարդկանց կենսական շա-
հերի համար մղվող համաշխարհային պայքարի ցեմենտող ուժը բանվոր դա-
սակարգն է և նրա կոմունիստական ու բանվորական պարտիաները, որոնց մի-
ջև հարաբերությունները կարող են խարսխվել միայն պրոլետարական ինտեր-
նացիոնալիզմի սկզբունքների հիման վրա։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մի քանի հիմնական պահանջները
կարելի է արտահայտել հետևյալ կերպ. միասնական մարքսիստական-լենին-
յան իդեոլոգիայի հիման վրա հանուն սոցիալիզմի բանվոր դասակարգի մղվող
պայքարի անհրաժեշտությունը բոլոր երկրներում. պրոլետարիատի ազգային ու
ինտերնացիոնալ խնդիրների միասնությունը և ազգային խնդիրները ինտեր-
նացիոնալ խնդիրներին ենթարկելու անհրաժեշտությունը. ազգային սահմա-
նափակվածության բացառում. ընդհանուր ինտերնացիոնալ խնդիրների զու-
գակցումը տվյալ երկրի առանձնահատկությունների հետ՝ հայրենասիրության
ու ինտերնացիոնալիզմի միասնությամբ հանդերձ. ժողովուրդների իրավահա-
վասարության խստիվ պահպանումը կյանքի բոլոր բնագավառներում, առա-
վել զարգացած երկրների պրոլետարիատի աջակցությունը գաղութային ու
կախյալ երկրների ժողովուրդների ազատագրական պայքարին՝ ընդհուպ մինչև
նրանց անջատումն ու ինքնուրույն պետության ստեղծումը. բանվոր դասա-



կարգի կազմակերպությունների ինտերնացիոնալ տիպը յուրաքանչյուր երկրում
և բանվոր դասակարգի կազմակերպական միասնության զանազան ձևերը մի-
ջազգային մասշտաբով և այլն։

Մեր ժամանակներում չի կարելի ինտերնացիոնալիստ լինել՝ առանց սո-
ցիալիստական լագերի ջերմ պաշտպան լինելու։ Մեծ չափով սոցիալիստական
լագերի գոյությունից, նրա ուժից են կախված ամբողջ աշխատավոր մարդ-
կության հաջողություններն այն պայքարում, որ մղում է նա խաղաղության
ու դեմոկրատիայի համար, նոր, սոցիալիստական կյանքի համար։

Մեր ժամանակներում, երբ ծաղկել ու հաջողությամբ զարգանում է հա-
մաշխարհային սոցիալիստական սիստեմը, պրոլետարական ինտերնացիոնա-
լիզմի կարևորագույն պահանջն է՝ պայքարել այդ սիստեմի պահպանման ու
ամրապնդման համար, բոլոր երկրների աշխատավորներին դաստիարակել եղ-
բայրական համագործակցության ու փոխադարձ օգնության ոգով։ Ի դեմս
Սովետական Միության, ի դեմս համաշխարհային սոցիալիստական լագերի,
կապիտալիստական երկրների աշխատավորները և ճնշված ժողովուրդները
տեսնում են ժողովուրդների եղբայրական համագործակցության օրինակը,
աշխարհի բոլոր ժողովուրդների խաղաղության պատվարը։ Հենց դրա համար
էլ բոլոր կոմունիստական ու բանվորական պարտիաները վճռականորեն դա-
տապարտեցին ազգային կոմունիզմի գաղափարների ռևիզիոնիստական քա-
րոզը, որի նպատակն էր պառակտել սոցիալիստական երկրները, թուլացնել
համաշխարհային սոցիալիստական սիստեմը։

Կոմունիստական և բանվորական պարտիաների Մոսկվայում կայացած
խորհրդակցությունները (1957 և 1960 թթ.) ցույց տվին, որ եղբայրական պար-
տիաների բարեկամական սերտ կապերը, ինտերնացիոնալ համախմբվածու-
թյունը տարեցտարի ամրապնդվում է ու զարգանում։ Կոմունիստական պար-
տիաներին, բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդներին միավորում են
շահերի ընդհանրությունը, նպատակի և աշխարհայացքի միասնությունը։

Սովետական պետությունը և մյուս բոլոր սոցիալիստական երկրները մի-
ջազգային զարգացման վրա ներգործում են տնտեսության, գիտության ու
կուլտուրայի զարգացման, ժողովրդական մասսաների բարեկեցության իրենց
վերելքի հաջողություններով։

Սովետական Միությունը սոցիալիստական երկրներին եղբայրական օգ-
նություն է ցույց տվել և շարունակում է օգնություն ցույց տալ կառուցելու
620 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնցից 291-ը՝ Չինաս-
տանում, 68-ը՝ Լեհաստանում, 50-ը՝ Ռումինիայում, 58-ը՝ Ալբանիայում,
45-ը՝ Բուլղարիայում, 30-ը՝ Կորեայի Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլի-
կայում, 27-ը՝ Հունգարիայում, 21-ը՝ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբ-
լիկայում, 16-ը՝ Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, 8-ը Չեխոսլո-
վակիայում և այլն։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներն էլ իրենց հերթին զգալի օգնու-
թյուն են ցույց տալիս ՍՍՌՄ-ին և միմյանց։ Ուղի հարթելով դեպի լուսաշող
ապագան՝ սոցիալիստական երկրների ժողովուրդները նոր հասարակության
նախատիպն են ստեղծում ամբողջ մարդկության համար։ Գիտական կոմու-
նիզմի վեհ գաղափարները նորանոր փայլուն հաղթանակներ են տանում։

«Առաջավոր երկրների ռևոլյուցիոներների և բոլոր կեղեքված ժողովուրդ-

ների հետ դաշինք կնքած ընդդեմ ամեն տեսակ և բոլոր իմպերիալիստների— այս է պրոլետարիատի արտաքին քաղաքականությունը»,—գրել է Վ. Ի. Լենինը (Երկեր հ. 25, էջ 93)։

ՍՄԿՊ-ն միջազգային պրոլետարական համերաշխության ոգով տոգորված իր ամբողջ գործունեությամբ իրականացնում է լենինյան այս քաղաքականությունը։

Ղեկավարվելով «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ի՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» անմահ կոչով՝ աշխարհի 81 երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները 1960 թ. նոյեմբերին հայտարարեցին, որ «իրենց ինտերնացիոնալ պարտքն են համարում բոլոր երկրների ժողովուրդներին կոչ անել համախմբվել, մոբիլիզացնել բոլոր իրենց ներքին ուժերը, ակտիվորեն գործել և, հենվելով համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորության վրա, կանխել կամ վճռական հակահարված տալ իմպերիալիստների միջամտությանը ռևոլյուցիայի ելած ամեն մի երկրի ժողովրդի գործերին»։

Աշխարհի բոլոր երկրների աշխատավորների հանդեպ սովետական մարդկանց ինտերնացիոնալ պարտքն է՝ հաջողությամբ կատարել կոմունիստական հասարակություն կառուցելու վիթխարի պլանները, որոնք իրենց ցայտուն արտահայտությունն են գտել մեր պարտիայի նոր Ծրագրի նախագծում, ամրապնդել ամբողջ սոցիալիստական լագերի հզորությունը, անդուլ պայքար մղել ժողովուրդների խաղաղության համար, ամրապնդել բարեկամությունն ու պրոլետարական համերաշխությունը ամբողջ աշխարհի աշխատավորների և դեմոկրատական ուժերի հետ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան հավատարիմ է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ «Պարտիան ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարությունը դիտում է որպես սովետական ժողովրդի ինտերնացիոնալ մեծ խնդիր, որը համապատասխանում է ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի շահերին, միջազգային պրոլետարիատի, բովանդակ մարդկության շահերին»։

Կոմունիզմը կատարում է բոլոր մարդկանց սոցիալական անհավասարությունից, ճնշման ու շահագործման բոլոր ձևերից, պատերազմի սարսափներից փրկելու պատմական միսիան և աշխարհում հաստատում է Խաղաղություն, Ազատություն, Հավասարություն ու Երջանկություն բոլոր ժողովուրդների համար։

Հ. ՕԳԱՆԵՍՈՎ
Պատմական գիտությունների թեկնածու

# ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀՈՅԱԿԱՊ ԾՐԱԳԻՐԸ

Ազգային հարաբերությունները, այսինքն՝ տարբեր ազգային ու ցեղային ընդհանրություններին պատկանող ժողովուրդների ու ազգային խմբերի հարաբերությունները, նշանակալի դեր են խաղում մարդկային հասարակության կյանքում։ Թեև այդ հարաբերություններն իրենք որոշվում են հասարակության մեջ տիրապետող տնտեսական-դասակարգային հարաբերություններով, այնուամենայնիվ, տարբեր ազգերի ու ժողովուրդների փոխադարձ կապերի ու ազդեցության, նրանց տնտեսական, քաղաքական ու կուլտուրական փոխհարաբերությունների վիճակը զգալի ազդեցություն է ունենում հասարակական զարգացման վրա։ Մարքսիզմ-լենինիզմը, հայտնագործելով հասարակության զարգացման օրինաչափությունները, կարողացավ բացահայտել ազգերի ու ազգությունների փոխադարձ հարաբերությունների իսկական հիմքերն ու դրանց հետագա զարգացման հեռանկարները։ Մարքսիզմ-լենինիզմը ցույց տվեց, որ ժողովուրդների միջև ամենասերտ բարեկամական, եղբայրական հարաբերություններ ստեղծելու համար անհրաժեշտ է վերացնել տարբեր ազգությունների միջև անվստահություն, թշնամություն ու պայքար ստեղծող հիմքը՝ մասնավոր սեփականությունն ու մարդու կողմից մարդու շահագործման հասարակարգերը, որոնք մի ազգին տիրապետող են դարձնում մյուսների նկատմամբ, թշնամացնում ու իրարից անջատում են ժողովուրդներին։

Ցարական կարգերը մեզ ծանր ժառանգություն էին թողել ազգային հարաբերությունների բնագավառում. ազգային անվստահություն, հաճախ թշնամություն, ազգերի տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման զգալի տարբերություններ։ Քաղաքականապես իշխող ու տնտեսապես զարգացած Կենտրոնական Ռուսաստանի կողքին գաղութային վիճակում գտնվող, հետամնաց տնտեսությամբ, խավարի ու տգիտության, անգրագիտության մեջ տառապող ծայրամասեր։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան ապահովեց մեր երկրում ազգային հարցի լուծման կայուն հիմք. նա հռչակեց բոլոր ժողովուրդների ու ազգությունների իրական հավասարություն, ճանաչեց նրանց ինքնորոշման, ընդհուպ մինչև անջատման ու ինքնուրույն պետություն կազմելու իրավունքը և հող ստեղծեց մեր երկրի ժողովուրդների կամավոր միավորման համար։ ՍՄԿՊ VIII համագումարը, հաստատելով պարտիայի Ծրագիրը, առանձնապես շեշտեց մեր երկրում ապրող բոլոր ազգերի ու ազգությունների փաստական, այսինքն՝ տնտեսական, քաղաքական ու կուլտուրական հավասարություն ստեղծելու և նախկինում ճնշված ժողովուրդների աշխատավոր

մասսաների լեզվի, կուլտուրայի զարգացմանը՝ կապիտալիզմի դարաշրջանից ժառանգած անվստահության և խորթացման բոլոր հետքերը վերացնելու անհրաժեշտությունը։

Ավելի քան քառասուն տարի է անցել պարտիայի այդ Ծրագրի ընդունումից հետո և այժմ կարելի է ամփոփել դրա կատարման հոյակապ արդյունքները։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախագիծն ամենայն հիմքով նշում է, որ «Սոցիալիստական հասարակարգում ոչ միայն ապահովված է ազգերի քաղաքական իրավահավասարություն, այլև վերացված են հին հասարակարգից ժառանգված՝ նրանց տնտեսական և կուլտուրական անհավասարությունը»։

Հիրավի, ի՞նչ համեմատություն կարող է լինել ծայրամասային ժողովուրդների նախկին և ներկա վիճակների միջև։ Ռևոլյուցիայից առաջ ռուսական կայսրության ծայրամասերում ապրող ժողովուրդները՝ հայերը, ուզբեկները, վրացիները, ղազախները, ադրբեջանցիները, տաջիկները և մյուսները զուրկ էին քաղաքական ինքնուրույնությունից։ Նրանք կառավարվում էին ցարական նահանգապետների ու չինովնիկների կողմից։ Ռուսական պետական օրգաններում կարող էին լինել այդ ժողովուրդների սոսկ հատ ու կենտ ներկայացուցիչներ շահագործող դասակարգերից, այն էլ երկրորդական-երրորդական պաշտոններում։ Այդ ազգերի տնտեսությունը գտնվում էր կիսանահապետական-կիսաֆեոդալական վիճակում, լիովին բացակայում էր մեքենայական արդյունաբերությունը։ Նրանց դարավոր կուլտուրան դարձել էր միայն ազգության չնչին փոքրամասնության սեփականություն, իսկ ժողովրդական հոծ մասսաները խարխափում էին անգրագիտության, խավարի ու տգիտության մեջ։

Այժմ այդ ժողովուրդները սուվերեն պետական միավորումներ են Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմի մեջ։ Նրանք ունեն իրենց պետական իշխանության բոլոր գերագույն օրգանները, որոնք ղեկավարվում են տեղական ազգության ներկայացուցիչների կողմից։ Այդ բոլոր ազգությունների ներկայացուցիչները կարևորագույն պաշտոններ են գրավում միութենական պետական օրգանների մեջ։

Հենվելով փոխադարձ եղբայրական օգնության, առաջին հերթին ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնության վրա, բոլոր սովետական ազգային ռեսպուբլիկաները, ինչպես արձանագրված է Ծրագրի նախագծում, իրենց մոտ ստեղծել են ժամանակակից արդյունաբերություն, բանվոր դասակարգի և ինտելիգենցիայի ազգային կադրեր, զարգացրել են ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրա։

Այս բոլորի փայլուն օրինակն է հենց թեկուզ հայ ժողովրդի զարգացումը վերջին քառասուն տարում։ Նախառևոլյուցիոն Հայաստանն իր ժամանակի հետամնաց երկրներից մեկն էր, իսկ տաճկական կոտորածներից և դաշնակների եռամյա անփառունակ տիրապետությունից հետո նա դարձել էր ավերի ու թալանի, որբերի ու հաշմանդամների, համաճարակների ու սովի մի իսկական «արցունքի հովիտ»։

Այժմ Սովետական Հայաստանը, որը միավորում է հայ ազգության հիմնական հատվածը սուվերեն սովետական պետականության մեջ, ընթանում է համաշխարհային արդյունաբերության, գիտության և կուլտուրայի առաջին շարքերում։ Սովետական իշխանության տարիներին այդ փոքր երկրում ռուս մեծ ժողովրդի և սովետական մյուս ժողովուրդների օգնությամբ կառուցվել



են ավելի քան 500 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ։ Այժմ Սովետական Հայաստանն արտադրում է մետաղահատ հաստոցներ, շարժական էլեկտրակայաններ, կոմպրեսորներ, տրանսֆորմատորներ, ժամացույցներ, ճշգրիտ սարքավորումներ, հիդրոտուրբիններ և այլ ամենաբազմապիսի սարքավորումներ, որոնք արտահանվում են աշխարհի շուրջ 40 երկրներ։ Բնակչության մեկ շնչին ընկնող արտադրված էլեկտրաէներգիայի քանակով Սովետական Հայաստանը գրավում է աշխարհում առաջին տեղերից մեկը։

Ոչ պակաս մեծ են գիտության և կուլտուրայի զարգացման նվաճումները։ Քառասուն տարի առաջ հայկական կուլտուրան Հայաստանի սահմաններից դուրս հատ ու կենտ մարդկանց էր հայտնի։ Հենց բուն Հայաստանում էլ նա համարյա թե անհայտ էր աշխատավոր մասսաներին և պայմաններ էլ չուներ լայն զարգացման համար։ Իսկ այժմ բնակչության ամեն մի հազար հոգուն ընկնող սովորողների և բարձրագույն կրթություն ունեցողների թվով Սովետական Հայաստանը գրավում է աշխարհում առաջին տեղերից մեկը։ Հայ գիտնականներ Վ. Համբարձումյանի, Օրբելիի և Ալիխանյան եղբայրների, Կնունյանցի, Սիսակյանի, Մերգելյանի, Լենինյան մրցանակի լաուրեատներ՝ նկարիչ Մարտիրոս Սարյանի, կոմպոզիտոր Արամ Խաչատրյանի և շատ ու շատ հայ այլ մտավորականների համբավը հայտնի է աշխարհով մեկ։ Բայց դուցե ավելի կարևոր է այն, որ անհամեմատ բարձրացել է Սովետական Հայաստանի աշխատավոր մասսաների կուլտուրական մակարդակը, սոցիալիզմի ոգով փոխվել է նրա կենցաղն ու բարոյականությունը, նրա ամբողջ հոգեբանությունը, հիմնականում հաղթահարվել են անցյալից ժառանգություն մնացած ազգային անվստահության և սահմանափակության ձգտումները։

Ազգային հարցում լենինյան ազգային քաղաքականության մեծագույն նվաճումներից մեկը հենց մեր երկրում ազգերի փոխադարձ վստահության, ավելին՝ ազգերի բարեկամության ու եղբայրության ստեղծումն է։ Այդ եղբայրությունը լիովին ստուգվեց Հայրենական Մեծ պատերազմի արհավիրքների ու բոցերի մեջ, այն ստուգվում ու ամրապնդվում է ամեն օր, ամեն ժամ կոմունիզմի համար կառուցվող անդուլ պայքարում։ Ոչ մի ուժ այլևս չի կարող անջատել ու թշնամացնել մեր երկրի ժողովուրդներին, որոնք ապրում են սոցիալիզմի ստեղծած մեծ հավասարության ու եղբայրության անխախտ դաշինքով։

Մեր երկրի ժողովուրդների կյանքում կատարված տնտեսական, քաղաքական և կուլտուրական վիթխարի ռևոլյուցիոն վերափոխումները հիմնովին փոխեցին մեր երկրի ազգերի հասարակական-դասակարգային բնույթը, այդ ազգերը վերածելով նոր սոցիալիստական ազգերի։ Մեր երկրի սոցիալիստական ազգերին հատուկ է բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի բարոյա-քաղաքական կուռ միասնությունը, որովհետև վերացվել են մասնավոր սեփականությունը, շահագործող դասակարգերը և մարդու շահագործումը մարդու կողմից։ Նրանց հատուկ են միասնական քաղաքական և բարոյական ձգտումները, միասնական աշխարհըմբռնումն ու սոցիալական նպատակները։ Այդպիսի կուռ, միասնական ազգեր պատմությունը մինչև այժմ չի տեսել և չէր էլ կարող տեսնել։ Մեր երկրում ազգերի հավասարությունը ոչ մի բացառություն չի ճանաչում, որովհետև նա իրապես և տնտեսապես, և քաղաքականորեն և գաղափարական հավասարների կուռ միասնություն է։

Պարտիան վերջին տարիներում վճռականորեն ուղղեց ազգային հարց-

ում անհատի պաշտամունքի հետևանքով թույլ տված առանձին սխալները,
ընդլայնեց ազգային ռեսպուբլիկաների իրավունքները տնտեսական և կուլ-
տուրական մի շարք կարևոր բնագավառներում։ Այդ միջոցառումներն ավելի
ամրապնդեցին մեր երկրի սոցիալիստական ազգերի միասնությունը։ Մեր երկ-
րի ամեն մի խոշոր ազգություն ունի իր պետականությունը, իր տերիտորիան
և սահմանները, սակայն այդ սահմանները գնալով ավելի ու ավելի սիմվոլիկ
նշանակություն են ստանում, որովհետև ամբողջ Սովետական Միության տե-
րիտորիան դարձել է միասնական հայրենի տերիտորիա մեր երկրի բոլոր ազ-
գերի համար։

Ազգային հարցի լուծման գործում ձեռք բերված մեծագույն նվաճումնե-
րը ցույց են տալիս, որ այդ բնագավառում, ինչպես և հասարակական կյան-
քի մյուս բնագավառներում մեր երկրում նախապատրաստված է անցումը
դեպի կոմունիզմը։ Ինչպես նշվում է պարտիայի նոր Ծրագրի նախագծում,
սոցիալիզմի պայմաններում ազգերի զարգացումը տեղի ունեցավ ոչ թե ազ-
գային միջնորմների, ազգային սահմանափակության և էգոիզմի ուժեղացման
ուղիներով, ինչպես դա տեղի է ունենում կապիտալիզմի օրոք, այլ նրանց մեր-
ձեցման, եղբայրական փոխօգնության ու բարեկամության ուղիներով։ Սովե-
տական Միության ազգությունների տնտեսության և կուլտուրայի աննախ-
ընթաց ծաղկումը, միասնական սոցիալիստական կյանքը, տարբեր ազգու-
թյուններին պատկանող սովետական մարդկանց մեջ հոգևոր կերպարի ընդ-
հանուր գծերի ստեղծումը, գծեր, որոնց մեջ մարմնավորվում են ՍՍՌՄ բոլոր
ժողովուրդների լավագույն տրադիցիաները, կենսական շահերով ամրապնդել
են մեկ միասնական ընտանիքում համախմբված մեր հայրենի ազգերի ու ազ-
գությունների, որոնք համատեղ ընթանում են դեպի միասնական նպատակը՝
կոմունիզմը։

Պարտիայի նոր Ծրագրի նախագիծը նշում է, որ կոմունիստական ծավա-
լուն շինարարությունը ՍՍՌՄ-ում «ազգային հարաբերությունների զարգաց-
ման նոր էտապ է նշանավորում, որը բնութագրվում է ազգերի հետագա մեր-
ձեցմամբ և նրանց լիակատար միասնության իրագործմամբ»։ Բացահայտե-
լով ազգերի մերձեցման, նրանց տնտեսական ու գաղափարական ընդհան-
րության, հոգևոր կերպարի կոմունիստական ընդհանուր գծերի անշեղ աճի
տենդենցը, Ծրագրի նախագիծը միաժամանակ ճիշտ կերպով նշում է, որ
ազգային տարբերությունների, հատկապես լեզվական տարբերությունների
ջնջվելը, «զգալիորեն ավելի տևական պրոցես է, քան դասակարգային սահմա-
նագծերի ջնջվելը»։ Հենց այս հիմքից էլ ելնելով, Ծրագրի նախագիծը առաջ է
քաշում պարտիայի նոր խնդիրները ազգային հարաբերությունների ասպարե-
զում։ Այդ խնդիրների իրականացումը կապահովի մեր երկրի սոցիալիստական
ազգերի հետագա անշեղ զարգացումը, նրանց միասնության ամրապնդումը։
Այդ խնդիրները հանգում են հետևյալին. ա) բոլոր սովետական ազգերի էկո-
նոմիկայի և կուլտուրայի համակողմանի զարգացման շարունակում, Սովետա-
կան Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության բոլոր ամենայնի ամրապըն-
դում և միաժամանակ ՍՍՌՄ ժողովուրդների ազգային պետականության ձևերի
հետագա կատարելագործում. բ) ազգային ռեսպուբլիկաների տնտեսության
հետագա համակողմանի զարգացում, նրանց տնտեսական փոխօգնության և
կապի հետագա սերտ աճում, ազգային ռեսպուբլիկաների իրավունքների հե-
տագա ընդլայնում, առանձնահատուկ ուշադրություն երկրի այն շրջանների վրա,



որոնք ավելի արագ զարգացման կարիք ունեն, ինչպես և կոմունիստական շի-
նարարության պրոցեսում աճող բարիքների արդարացի բաշխում բոլոր ազգե-
րի և ազգությունների միջև. գ) ՍՍՌՄ ժողովուրդների սոցիալիստական կուլ-
տուրայի հետագա բազմակողմանի ծաղկման ապահովում, ընդ որում պար-
տիան նպատակ է դնում ավելի լայնորեն օգտագործել ազգային ձևերը և
ամեն կերպ նպաստել ՍՍՌՄ ժողովուրդների կուլտուրաների սոցիալիստա-
կան բովանդակության զարգացմանը, նրանց հետագա փոխհարստացմանն ու
մերձեցմանը, կոմունիզմ կառուցողների նոր, բոլոր ազգերի համար միաս-
նական ռևոլյուցիոն տրադիցիաների զարգացմանը. դ) ՍՍՌՄ ժողովուրդների
լեզուների հետագա ազատ զարգացման ապահովումը, ընդ որում Ծրագրի նա-
խագիծը նախատեսում է «ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացու համար ապահովել
լիակատար ազատություն՝ խոսելու, իր երեխաներին դաստիարակելու և ուս-
ման տալու ցանկացած լեզվով, թույլ չտալով ոչ մի արտոնություն, սահմանա-
փակում կամ հարկադրանք այս կամ այն լեզվի գործածության հարցում». ե)
ինտերնացիոնալիզմի սկզբունքների հետագա հետևողական կիրառում, ժողո-
վուրդների բարեկամության ամրապնդում և անհաշտ պայքար ամեն տեսակի
նացիոնալիզմի ու շովինիզմի դրսևորումների ու մնացուկների դեմ, ազգային
սահմանափակության և բացառիկության, անցյալի իդեալականացման և ժո-
ղովուրդների պատմության մեջ սոցիալական հակասությունների սքողման
տենդենցների դեմ, իրենց դերն ապրած սովորույթների և բարքերի դեմ։

Այս խնդիրների իրականացումը կհանգեցնի մեր երկրի սոցիալիստա-
կան ազգերի հետագա բուռն ծաղկմանը և նրանց բարեկամության ամրապընդ-
մանը։ Ավելին, դրանք հիմք կհանդիսանան սոցիալիզմի ամբողջ համաշխար-
հային սիստեմի ազգերի ու ազգությունների հարաբերությունների հետագա
զարգացման համար։

ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծի ազգային հարաբերություններին նվիրված
մասն անտարակույս ունի նաև միջազգային խոշոր նշանակություն։ Այն
որոշակիորեն ցույց է տալիս բոլոր երկրների ժողովուրդներին, թե մեր երկ-
րում ինչպես է ապահովվում նախկինում զարգացման տարբեր աստիճաննե-
րի վրա կանգնած ազգերի իրական հավասարությունը, ինչպես ազգերի անց-
յալ անվստահության ու թշնամության փոխարեն կյանքի նորմա է դարձել
նրանց եղբայրությունն ու բարեկամական անշահախնդիր օգնությունը։ Ազ-
գերի այս նոր հարաբերությունների զարգացումը, որոնց հետագա զարգաց-
ման պայմաններն այնքան հստակ ու որոշակի շարադրված են Ծրագրի նա-
խագծում, մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման և ամ-
բողջ աշխարհում կոմունիզմի հաղթանակի հաստատուն երաշխիքներից
մեկն է։

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՃԳՆԱԺԱՄԻ ՆՈՐ ԷՏԱՊԸ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախագիծը մարքսիզմ-լենինիզմի խոշորագույն ստեղծագործությունն է։ Կոմունիստական հասարակության կառուցման այդ ծրագրում մարքս-լենինյան ուսմունքի բազմաթիվ հարցերի թվում իր հետագա զարգացումն է ստացել նաև կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի լենինյան թեորիան։ Այնտեղ մենք կարդում ենք. «Նորանոր երկրների անջատվելը կապիտալիզմից. իմպերիալիզմի դիրքերի թուլացումը սոցիալիզմի հետ տնտեսական մրցության մեջ. իմպերիալիզմի գաղութային սիստեմի տրոհվելը. պետական մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման և միլիտարիզմի աճման հետևանքով իմպերիալիզմի հակասությունների սրումը, կապիտալիստական էկոնոմիկայի ներքին անկայունության և նեխման ուժեղացումը, որը դրսևորվում է արտադրողական ուժերը լրիվ օգտագործելու՝ կապիտալիզմի հարաճուն անընդունակության մեջ (արտադրության աճի ցածր տեմպեր, պարբերական ճգնաժամեր, արտադրական կարողությունների մշտական թերբեռնվածություն, խրոնիկական գործազրկություն). աշխատանքի և կապիտալի միջև պայքարի աճը. համաշխարհային կապիտալիստական տնտեսության հակասությունների խիստ սրումը. քաղաքական ռեակցիայի չտեսնված ուժեղացումը բոլոր գծերով, բուրժուական ազատություններից հրաժարվելը և մի շարք երկրներում ֆաշիստական, բռնակալական ռեժիմների հաստատումը, բուրժուազիայի քաղաքականության և գաղափարախոսության խոր ճգնաժամը,— սրանումն է արտահայտվում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը» (Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծ, Հայպետհրատ, 1961, էջ 30)։*

*Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամն ունեցել է երեք էտապ։ Առաջին համաշխարհային պատերազմը և Հոկտեմբերյան ռևոլյուցիան դրեցին կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սկիզբը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի և Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում տեղի ունեցած սոցիալիստական ռևոլյուցիաների ընթացքում ծավալվեց կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապը։ Այժմ կապիտալիզմը թևակոխել է այդ ճգնաժամի նոր, երրորդ էտապը։*

*Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի յուրաքանչյուր էտապը պայմանավորված է տնտեսական ու քաղաքական այն հսկայական փոփոխություններով, որոնք արմատական բեկում են ստեղծում համաշխարհային պատմության մեջ, դուրս են քաշում միջազգային կյանքի ուղղությունն ու ընթացքը որոշող նոր վիթխարի ուժեր։ «Ամեն մի ճգնաժամ,— գրում է Վ. Ի. Լենինը,— մի կողմ է նետում պայմանականը, պատռում է արտաքին թաղանթները, դեն է գցում մեռածը, բաց է անում ավելի խորը զսպանակները և ուժերը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 476)։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջին էտապում այդպիսի վիթխարի ուժ էր Սովետական Միությունը, որը երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի նկատմամբ տարած փառավոր հաղթանակով հարյուր միլիոնավոր մարդկանց ազատագրեց ֆաշիստական կեղեքման ճիրաններից և նրանց հնարավորություն տվեց ինքնուրույն կերպով տնօրինելու իրենց սեփական բախտը։*

*Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երկրորդ էտապի ամենաբնորոշ կողմն այն էր, որ ֆաշիստական գերությունից և իմպերիալիստական շահագործման լծից ազատագրված երկրների նշանակալի մասի աշխատավորները տապալեցին իրենց երկրների բուրժուա-կալվածատիրական կառավարությունները և ստեղծեցին նոր, սոցիալիստական կարգեր։ 1945 թվականից հետո, առաջին տասնամյակի ընթացքում, մի կողմից տեղի էր ունենում այդ երկրների էկոնոմիկայի վերականգնումն ու սոցիալիստական վերակառուցումը և, մյուս կողմից, նոր, համաշխարհային սոցիալիստական տնտեսության կազմավորումը։ Գալիք սոցիալիստական ռևոլյուցիան խիստ կարագացնի պատմական դեպքերի զարգացման ընթացքը, գրում էր Վ. Ի. Լենինը. «Մենք փորձով տեսնում ենք, թե ինչպիսի հսկայական ոլորքներ է անում ռևոլյուցիայի պատմությունը, և դեռ միայն մեղանում, բանը դեռ որքան ավելի բարդ և արագ ընթացք կստանա, զարգացման տեմպն ավելի կատաղի կլինի, և շրջադարձերն ավելի բարդ կլինեն, երբ ռևոլյուցիան կվերածվի եվրոպականի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 143)։ Եվ իրոք, համաշխարհային ռևոլյուցիայի նոր հորձանքը կապիտալիստական շահագործումից ազատագրեց շուրջ մեկ միլիարդ աշխատավորների, իսկ գաղութային կեղեքման լծից՝ 1,5 միլիարդ մարդ։*

***

*Նոր կազմավորվող համաշխարհային սոցիալիստական տնտեսությունը շուրջ մեկ տասնամյակի ընթացքում ավարտեց իր կազմավորման ու ամրապնդման շրջանը և ներկայումս հանդիսանում է մեծագույն ուժ, որը որոշում է* «Արդի դարաշրջանում մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը և գլխավոր առանձնահատկությունները» *(Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը, 1960, էջ 9)։ Իսկ «Արդի դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, երկու հակադիր հասարակական սիստեմների պայքարի դարաշրջան է, սոցիալիստական և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, նորանոր ժողովուրդների՝ սոցիալիզմի ուղին անցնելու, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։ Արդի դարաշրջանի կենտրոնում կանգնած են միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը» (Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծ, Հայպետհրատ, 1961, էջ 6)։ Սրանք են կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նոր՝ երրորդ էտապի բնորոշ առանձնահատկությունները։*

*Տնտեսության սոցիալիստական սիստեմի հսկայական առավելությունները*

կապիտալիստական տնտեսության նկատմամբ արտահայտվեցին նախ նրանում, որ շատ կարճ ժամանակում ստեղծվեց համաշխարհային սոցիալիստական տնտեսություն, այն ժամանակ, երբ համաշխարհային կապիտալիստական տնտեսության ստեղծման համար պահանջվեց մի քանի հարյուրամյակ։ Երկրագնդի բնակչության 35 տոկոսը ապրում են սոցիալիստական երկրներում, 45 տոկոսը ազատագրվել է իմպերիալիզմի գաղութային լծից կամ շարունակում է պայքարը իմպերիալիզմի դեմ։ Այդ կնշանակի, որ բուն իմպերիալիստական երկրներն ընդգրկում են բնակչության մեկ հինգերորդ մասը միայն։

Սոցիալիստական երկրների էկոնոմիկայի զարգացման տեմպերը վիթխարի չափերով գերազանցում են կապիտալիստականից։ Արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը 1951—1959 թթ. բոլոր սոցիալիստական երկրների համար կազմում է 13,7 տոկոս, իսկ կապիտալիստական երկրների համար՝ 4,8 տոկոս, այդ թվում ԱՄՆ-ի համար՝ 3,9, իսկ Անգլիայի համար՝ 2,7 տոկոս։

Սոցիալիստական տնտեսության առավելություններն այնքան ցայտուն են, որ դրանք չեն կարողանում ժխտել նույնիսկ մեր հակառակորդները։ Անգլիական «Տրիբյուն» թերթը ընդունում է, որ «ընդհանրապես կոմունիստական բլոկի և մասնավորապես Սովետական Միության ձեռք բերած տնտեսական հաջողությունները հետպատերազմյան ժամանակաշրջանում ֆենոմենալ են», որ «կոմունիստական երկրների էկոնոմիկան կարող է գերազանցել և կգերազանցի կապիտալիստական երկրների էկոնոմիկային»։ Զարգացման բարձր տեմպերի շնորհիվ սոցիալիստական երկրների արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ 1958 թվականին արդեն գերազանցում էր մեկ երրորդ մասից, այդ թվում ածխի արդյունաբերության մեջ կազմում էր 46,6 տոկոս, չուգունի արտադրության մեջ՝ 33,3, պողպատի արտադրության մեջ՝ 30,0 տոկոս (տե՛ս Международный ежегодник, 1960 թ., էջ 507)։ Եթե միաժամանակ հիշենք, որ երկրագնդի բնակչության 40 տոկոսն ընդգրկող երկրներն այլևս խոշոր իմպերիալիստական երկրների քաղաքական վասալը և տնտեսական կցորդը չեն, ապա բոլորովին ակնհայտ կդառնա բուն իմպերիալիստական երկրների էկոնոմիկայի տեսակարար կշռի շեշտակի անկումը համաշխարհային էկոնոմիկայի մեջ։

Սոցիալիզմի և կապիտալիզմի տնտեսական մրցության ընթացքում անընդհատ փոխվում է ուժերի հարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի։ Համաշխարհային սոցիալիստական տնտեսությունը որպես վիթխարի տնտեսական ու քաղաքական ուժ ապահովում է սոցիալիզմի լիակատար հաղթանակը, որի երաշխիքը Վ. Ի. Լենինը համարում էր այն, որ մարդկության մեծամասնությունը ներգրավվում է իմպերիալիզմի դեմ մղվող ազատագրական պայքարի մեջ։

Ինչպես ասված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագծում, «աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային կանգնեցնել սոցիալիստական հասարակարգի առաջընթաց զարգացումը»։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նոր էտապի կարևորագույն առանձնահատկությունն այն է, որ ծավալվեց ոչ համաշխարհային պատերազմի կապակցությամբ, այլ երկու սիստեմների խաղաղ գոյակցության, նրանց մրցության պայմաններում, սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերի ծաղկման և իմպերիալիստական երկրների միջև հակասությունների խորացման պայման-



ներում։ Համաշխարհային սոցիալիստական տնտեսությունը վճռական ուժ է հանդիսանում ժամանակակից միջազգային կյանքի բոլոր կարևորագույն հարցերը ժողովրդի շահերին համապատասխան լուծելու համար։ «Համաշխարհային սոցիալիստական լագերը իր հզոր էկոնոմիկայով և զինված ուժերով ավելի ու ավելի աճող ազդեցություն է ունենում պատերազմի ու խաղաղության հարցերի լուծման գործում» (Ն. Ս. Խրուշչով)։ Կասկածից վեր է, որ այս պայմաններում ժողովուրդներն անպայման կարող են կանխել պատերազմը և դրանով իսկ ապահովել խաղաղ գոյակցությունը։

Նոր իրադրությունը կարևորագույն նշանակություն ունի պրոլետարիատի դասակարգային պայքարի առանձնահատկությունները ճիշտ ըմբռնելու տեսակետից։ Ներկայումս, երբ իմպերիալիզմի դեմ, սոցիալիզմի և դեմոկրատիայի համար պայքարը ընդգրկել է մարդկության մեծ մասը, երբ սոցիալիզմի երկրներում բարգավաճում են էկոնոմիկան, գիտությունն ու կուլտուրան, երբ սրվում են հակասությունները խոշոր իմպերիալիստական պետությունների միջև, իմպերիալիզմի շղթայից նրա թույլ օղակների անջատումը կարող է տեղի ունենալ նաև երկու սիստեմների խաղաղ գոյակցության պայմաններում, առանց իմպերիալիստական պատերազմների։ Վ. Ի. Լենինը սոցիալիստական ռևոլյուցիայի իրագործման պայմանները համարում է քաղաքացիական և ազգային ազատագրական շարժումները, որոնք կարող են սկսվել ամենատարբեր առիթներով։ «Սոցիալիստական ռևոլյուցիան կարող է բռնկվել ոչ միայն խոշոր գործադուլի կամ փողոցային ցույցի կամ սովյալների բունտի կամ զինվորական ապստամբության կամ գաղութային խռովության պատճառով, այլև ուզածդ քաղաքական կրիզիսից, ինչպես Դրեյֆուսի գործն էր, կամ Ցաբեռնի միջադեպը, կամ հարստահարված ազգի անջատման հարցի հետ կապված հանրաքվեից և այլն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 186)։ Ըստ որում, սոցիալիստական ռևոլյուցիան կարող է տեղի ունենալ նաև առանց քաղաքացիական պատերազմի, և «ներկայումս դրա համար ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվել, քան երբևիցե» (Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծ, Հայպետհրատ, 1961, էջ 47)։ Հետևաբար, սոցիալիստական ռևոլյուցիայի շարժիչ ուժերը հասունանում են կապիտալիստական հասարակության ընդերքում, կապված են կապիտալիզմի զարգացման օրինաչափությունների հետ ընդհանրապես և ոչ թե միայն իմպերիալիստական պատերազմների հետ։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի և համաշխարհային կապիտալիստական սիստեմի զարգացումը տեղի է ունենում ուղղակի հակադիր օրենքներով։ Համաշխարհային սոցիալիստական տնտեսության ծաղկումն ու բարգավաճումը տեղի է ունենում սոցիալիստական երկրների սերտ տնտեսական համագործակցության, փոխադարձ անշահախնդիր օգնության և նրանց քաղաքական ու պետական սուվերենության ապահովման պայմաններում, իսկ համաշխարհային կապիտալիստական տնտեսության անկումն ու քայքայումը կատարվում է կապիտալիստական տնտեսության ներհատուկ հակասությունների խորացման պայմաններում, ընդհանրապես, և կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նոր էտապի համար բնորոշ հակասությունների առաջացման պայմաններում, մասնավորապես։

Նախ, հակասությունները խորանում են բուն խոշոր իմպերիալիստական երկրների միջև առավելագույն շահույթի աղբյուրների՝ հումքի, էժան աշխատ-

ուժի աղբյուրների և վաճառահանման շուկաների բաժանման ու վերաբաժանման հողի վրա։ Համաշխարհային կապիտալիստական տնտեսության քայքայումը զուգորդվում է իմպերիալիստական երկրների ազդեցության շրջանների շարունակաբար նեղացմամբ։ Նախկին գաղութային և կախյալ երկրները ազգային անկախություն, տնտեսական ու քաղաքական ինքնուրույնություն նվաճելով, ավելի են սահմանափակում իմպերիալիստական երկրների շահագործման հնարավորությունները։ Այս հողի վրա, մի կողմից, սրվում են հակասությունները խոշոր իմպերիալիստական երկրների միջև՝ միմյանցից համեղ պատառները խլելու համար, մյուս կողմից, սրվում են հակասությունները խոշոր և փոքր իմպերիալիստական պետությունների միջև։ ԱՄՆ-ը, Անգլիան, Ֆրանսիան, ԳՖՌ-ն ձգտում են տարբեր ճանապարհներով իրենց կորուստները մասամբ փոխհատուցել Հոլանդիայի, Բելգիայի և եվրոպական այլ երկրների հաշվին։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նոր էտապի համար հատկապես բնորոշ է հակասությունների սրումը տնտեսապես թույլ զարգացած կապիտալիստական երկրների և իմպերիալիստական պետությունների միջև։ Գաղութային ու կախյալ երկրների պայքարը ազգային դեմոկրատիայի պետություն ստեղծելու համար՝ պայքար է իմպերիալիստական շահագործման լծից վերջնականապես ազատագրվելու համար։

Գաղութային ռեժիմը վերջնականապես կործանվում է ազգային-դեմոկրատական ռևոլյուցիաների ջախջախիչ հարվածների տակ։ «Ազգային ազատագրական ռևոլյուցիաների հզոր ալիքը սրբում-տանում է գաղութային սիստեմը, քայքայում է իմպերիալիզմի հիմքերը» (Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծ, Հայպետհրատ, 1961, էջ 53)։ Հակաիմպերիալիստական ռևոլյուցիաների հաղթանակները պայմանավորված են համաշխարհային սոցիալիստական տնտեսության վճռական ուժ դառնալու փաստով, առանց որի փոքրիկ Կուբան չէր կարող փրկել ժողովրդական ռևոլյուցիայի նվաճումները ամերիկյան իմպերիալիզմի գրոհներից։

Անկախություն նվաճած պետությունների ռևոլյուցիոն-դեմոկրատական միջոցառումների հաջող կենսագործման բնագավառում անգնահատելի նշանակություն ունի ամբողջ աշխարհի աշխատավորների և հատկապես համաշխարհային սոցիալիստական տնտեսության կողմից նրանց ցույց տրվող բազմակողմանի օգնությունը։ Ինչպես ասված է ՍՄԿՊ Ծրագրի նախագծում, «Սոցիալիզմի երկրները ազատության համար պայքարող կամ իմպերիալիստական լծից ազատագրված ժողովուրդների անկեղծ ու հավատարիմ բարեկամներն են և բազմակողմանի աջակցություն են ցույց տալիս նրանց։ Նրանք կողմնակից են գաղութային ճնշման բոլոր ձևերի ոչնչացմանը և ամեն կերպ նպաստում են գաղութային կայսրությունների ավերակների վրա ծագող պետությունների սուվերենության ամրապնդմանը» (Նույն տեղ, էջ 61)։

* * *

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի բնորոշ առանձնահատկություններից մեկը կապիտալիստական հասարակարգի նեխման, փտման, նրա պարազիտիզմի ուժեղացումն է, որը տեղի է ունենում կապիտալիզմի հիմնական հակասության՝ արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կա-



պիտալիստական եղանակի միջև հակասության խորացման հիման վրա։ Հարստության և աղքատության միջև անդունդը վիթխարի չափերի է հասնում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման ներկա էտապում, երբ ողջ ժողովրդական տնտեսությունը գտնվում է մի բուռն գիգանտ մոնոպոլիստական միավորումների և նրանց կամակատար իմպերիալիստական պետությունների ձեռքում, որոնք յուրացնում են հարյուր միլիոնավոր աշխատավորների կողմից ստեղծված հսկայական հասարակական հարստության առյուծի բաժինը։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման ներկա էտապում խոշոր արդյունաբերության կարևորագույն ճյուղերի գծով մոնոպոլիաներից դուրս մնացած կապիտալիստական ձեռնարկություններ գրեթե գոյություն չունեն։ Հետևաբար, մոնոպոլիաները ներկայումս կեղեքում են աշխատավորության հետ միասին բնակչության բոլոր շերտերին միասին վերցրած և, հանուն իրենց առավելագույն շահույթների ապահովման, միջոցների մեջ խտրություն չեն դնում։

Կապիտալիստական երկրների աշխատավորության բոլոր շերտերի և նույնիսկ մանր ու միջակ կապիտալիստների մի մասի գլխավոր թշնամին հանդիսանում են մոնոպոլիաները։ Այդ պատճառով էլ բանվոր դասակարգը հիմնական հարվածն ուղղում է կապիտալիստական մոնոպոլիաների դեմ։ Մոնոպոլիաների անսահմանափակ իշխանության վերացմամբ կենսականորեն շահագրգռված են ազգի բոլոր հիմնական խավերը։

Ֆինանսական կապիտալի սերտաճումը պետական ապարատի հետ ավելի է սրում կապիտալիզմի հիմնական հակասությունը, ավելի է ուժեղացնում կապիտալիզմի պարազիտիզմն ու փտումը։ Կապիտալիզմի պարազիտային բնույթը, նրա փտումը արտահայտվում է այն փաստի մեջ, որ արտադրողական ուժերի բնույթին արտադրական հարաբերությունների անհամապատասխանությունը, նրանց միջև կոնֆլիկտը հասնում է ծայրահեղ աստիճանի։ Այն հանգամանքը, որ գիտության և տեխնիկայի նվաճումները կիրառություն են գտնում ոչ թե արտադրողական ուժերի զարգացման բնագավառում, այլ վերածվում են հասարակության նյութական ու կուլտուրական արժեքները և իրենց՝ մարդկանց մասսայաբար ոչնչացնելու զենքերի, հանդիսանում է կապիտալիզմի կործանման անխուսափելիության ապացույցներից մեկը։

* * *

Կապիտալիզմի հիմնական հակասության արտահայտության բնորոշ ձևերից մեկը գերարտադրության տնտեսական ճգնաժամերն են, որոնք պարբերաբար կրկնվում են XIX դարի 20-ական թվականներից սկսած։ Կապիտալիստական արտադրության ցիկլային բնույթի զարգացման ընթացքում, մի կողմից, արտադրության վերելքի շրջանում գիշատչորեն շահագործվում են հասարակության արտադրողական ուժերը, ավելի մեծ քանակությամբ հարստություն արտադրելու և հավելյալ արժեք յուրացնելու համար, մյուս կողմից, արտադրված նյութական արժեքները ճգնաժամի շրջանում վիթխարի չափերով ոչնչացվում են։ Արտադրական ձեռնարկությունների նշանակալի մասը փակվում է և լիկվիդացվում, գործող արտադրական սարքավորման թերբեռնվածությունը և գործազուրկների պահեստաբանակը խիստ աճում են, որոնք

կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի շրջանում ընդունում են խրոնիկական բնույթ։ Արտադրության հիմնական տարրերը՝ աշխատանքը և արտադրության միջոցները մատնվում են անգործության, ոչնչանում։ Միլիոնավոր գործազուրկների բանակը արտադրական կարողությունների մեծ չափերի հասնող թերբեռնվածության պայմաններում բնորոշ է ոչ միայն ճգնաժամերի ու լճացման, այլև արտադրության վերելքի փուլի համար։

ԱՄՆ-ի արդյունաբերության կարևորագույն ճյուղերում արտադրական կարողությունների և թողարկվող արտադրանքի միջև ճեղքվածքը մեծացել էր նույնիսկ 1959 թ. «վերելքի» ժամանակ։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման ներկա նոր էտապի համար հատկապես բնորոշ է այն, որ արտադրության ցիկլը անճանաչելիորեն փոխվել է։ Մինչև իմպերիալիզմը գերարտադրության տնտեսական ճգնաժամերը միջին հաշվով կրկնվում էին 10 տարին մեկ անգամ, իսկ 1900—1929 թթ. շրջանում կրճատվեց և իջավ մինչև 6—7 տարի։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո գերարտադրության տնտեսական ճգնաժամերը ԱՄՆ-ում կրկնվում են 3—4 տարին մեկ անգամ, իսկ այժմ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի նոր էտապում ԱՄՆ-ի էկոնոմիկան գրեթե գտնվում է տևական լճացման վիճակում։ 1957—1958 թթ. համաշխարհային տնտեսական ճգնաժամին հաջորդեց 1959 թ. «վերելքը» (1959 թ. ԱՄՆ-ի արտադրության այդ «վերելքի» համար բնորոշ է այն փաստը, որ նրա վճարումները կատարվեցին ոսկու ֆոնդը 3,4 մլրդ. դոլարով կրճատելու հաշվին, որը հետագայում պակասեց դարձյալ 1,6 միլիարդ դոլարով և 1961 թ. հունվարին հասավ 17,6 մլրդ. դոլարի՝ 1957 թ. 23 մլրդ. դոլարի դիմաց), որի ընթացքում ԱՄՆ-ին չհաջողվեց վերացնել նույնիսկ ճգնաժամի հետևանքները, երբ վրա հասավ նոր անկումը։ 1960 թ. առաջին կիսամյակում արդյունաբերական արտադրանքի մակարդակը իջավ 7 տոկոսով։ 1961 թ. սկզբներից սկսվում է արդեն նոր համաշխարհային տնտեսական ճգնաժամ, որը խոստովանում են նաև կապիտալիստական երկրների կառավարական շրջանների ներկայացուցիչները։ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քեննեդին կոնգրեսին ուղղած իր առաջին ուղերձում արձանագրում է այն փաստը, որ «մեր էկոնոմիկայի ներկա վիճակը առաջացնում է տագնապ» («Պրավդա», 31 հունվարի, 1961 թ.)։ ԱՄՆ-ի աշխատանքային մինիստրությունը նշում է, որ 1960 թ. վերջին լրիվ գործազուրկների թիվը հասնում էր 6 միլիոնի և երկյուղ է հայտնում, որ այս տարի լրիվ գործազուրկների թիվը հասնելու է 8,5 միլիոնի։ Արդյունաբերության անկումն սկսվում է նաև Անգլիայում։ Արտադրության զարգացման տեմպերը իջնում են նաև Արևմտյան Գերմանիայում, Իտալիայում և մյուս կապիտալիստական երկրներում։

***

Կապիտալիստական համաշխարհային տնտեսության հակասությունների խորացումը ծանր հետևանքներ է ունենում աշխատավորության համար։ Ֆինանսական օլիգարխիան, զրկվելով առավելագույն շահույթի աղբյուրների զգալի մասից գաղութային և կախյալ երկրներում, աշխատում է այդ կորուստները փոխհատուցել երկրի ներսում աշխատավորության շահագործման աստիճանի բարձրացման միջոցով, որի համար նա գործադրում է բոլոր լծակները։ Վիթխարի չափերով բարձրացել է ապրուստի արժեքը, որը ԱՄՆ-ում 1959 թ. կազմում էր 1953 թ. մակարդակի 109 տոկոսը։ Անգլիայում ապրուստի արժեքը 1959 թ. կազմեց 1953 թ. մակարդակի 120 տոկոսը, Իսպանիայում՝ 150, Ֆրանսիայում՝ 129, Իտալիայում՝ 113, ԳՖՌ-ում՝ 112 տոկոսը (տե՛ս Международный ежегодник, 1960 թ., էջ 549)։ ԱՄՆ-ում 1954 թ. պաշտոնական հաշվարկումներով 3,1 միլիոն ընտանիքների տարեկան եկամուտը չէր գերազանցել 1000 դոլարից, այն ժամանակ, երբ Գելերի կոմիտեի հաշվարկումներով ապրուստի մինիմումը 5335 դոլար էր։ Եթե միաժամանակ հիշենք, որ բնակարանի վարձը և կոմունալ ծախսերը ԱՄՆ-ում չափազանց բարձր են, ապա պարզ կդառնա, որ այդ ընտանիքները մի կերպ քարշ են տալիս իրենց կիսաքաղց վիճակը։ Աշխատավորության դրությունն անտանելի է դառնում հատկապես ճգնաժամի տարիներին։ Չափազանց բնորոշ է սենատոր Պոլ Դուգլասի խոստովանությունը, որ նա արել է 1959 թ. ապրիլի 8-ին Վաշինգտոնում կայացած գործազուրկների կոնֆերանսում։ Բնութագրելով գործազուրկների վիճակը, սենատորը նշել է, որ «Արևմտյան Վիրջինիայում և Կենտուկիում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ներկայումս կան տղամարդիկ, կանայք և երեխաներ, որոնք սովամահ են լինում... Ինչպիսի՜ բարբարոսություն է թույլ տալ, որ ժողովուրդը քաղցից տառապի, երբ մեր պահեստները լցված են սննդամթերքներով»։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացումը զուգորդվում է կապիտալիստական երկրներում քաղաքական ռեակցիայի ուժեղացումով։ Մոնոպոլիստական կապիտալիզմի ագրեսիվ քաղաքականությանը բանվոր դասակարգը դիմադրում է արժանի հակահարվածով։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ներկա էտապում երկրագնդի բնակչության հսկայական մեծամասնությունն անհաշտ պայքար է ծավալում ֆինանսական օլիգարխիայի ագրեսիվ քաղաքականության դեմ, կաշկանդում է նրա ռեակցիոն պլանների կենսագործումը ինչպես արտաքին քաղաքականության բնագավառում, այնպես էլ երկրի ներսում։

Իմպերիալիստական պետությունների ագրեսիվ քաղաքականությունը բոլոր կողմերից հանդիպում է ժողովրդական լայն զանգվածների հուժկու հակահարվածին և ապրում է իր խոր ճգնաժամը։ Այդ հակաիմպերիալիստական, դեմոկրատական շարժման ուղղություն և տոն տվող ուժը հանդիսանում են բոլոր երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները, որոնց անձնուրաց ռևոլյուցիոն պայքարի շնորհիվ «կոմունիզմը, որ մի ժամանակ սոսկ ուրվական էր թվում, դարձավ արդիականության մեծագույն ուժը, մի հասարակարգ, որը կառուցվում է երկրագնդի հսկայական տարածություններում»։

Ն. ԹՈՎՄԱՍՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ԿՅԱՆՔԻ ԾՐԱԳԻՐԸ

ՍՄԿՊ Ծրագրի նախագծում, որը աշխարհի ժողովուրդները գնահատեցին որպես կոմունիզմի մեծ խարտիա, առաջին անգամ, գիտական կոմունիզմի ամբողջ պատմության մեջ, կոմունիզմի մասին խոսվում է որպես սովետական ժողովրդի այսօրվա գործնական անմիջական խնդիր, թվաբանական ճշտությամբ սահմանված են կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գլխավոր սահմանագծերը, որոշակիորեն նշված է այն ժամանակաշրջանը, որի ընթացքում սովետական ժողովուրդը հիմնականում կկառուցի կոմունիստական հասարակարգ։ Մի ամբողջ էպոխա նշանավորող այդ փաստաթղթի մեջ վառ կերպով արտահայտված է կոմունիզմի վիթխարի կենսահաստատ ուժը, նրա գաղափարների տարած համաշխարհային պատմական հաղթանակները, որոնք նախապատրաստեցին կոմունիստական հասարակարգի կառուցման պրակտիկ հնարավորությունը։

Ծրագրի նախագծում միանգամայն ճիշտ հարց է առաջ քաշվում. «Անշեղորեն կրճատել վարձու պարտիական ապարատը, որպես արտահաստիքային աշխատողներ ավելի լայնորեն ներգրավել կոմունիստներին հասարակական գործունեության կարգով»։ Կյանքը ցույց է տալիս, որ մենք հասունացել ենք այդ ուղղությամբ առաջ շարժվելու համար։ Պարտիան աճեցրել է ընդունակ, եռանդուն և բարեխիղճ բազմաթիվ կադրեր, որոնք հասարակական ակտիվ ու լայն աշխատանք են կատարում։

Անհրաժեշտ ենք համարում մի քանի լրացումներ ու դիտողություններ անել ՍՄԿՊ նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերի վերաբերյալ։

Իմ կարծիքով նպատակահարմար կլինի շրջկոմում ունենալ երկու քարտուղար, իսկ արտահաստիքային քարտուղարների քանակը թողնել շրջկոմների պլենումների հայեցողությանը, ելնելով տվյալ շրջանի պրոֆիլից և ծավալից։

Ծրագրի նախագծի առաջին մասի 5-րդ գլխում ճիշտ կերպով նշված է, որ «Հաղթանակած սոցիալիզմը իր օրինակով ռևոլյուցիոնացնող ազդեցություն է գործում կապիտալիստական աշխարհի աշխատավորների մտքերի վրա, նրանց պայքարի ոգեշնչում ընդդեմ իմպերիալիզմի և հսկայական չափով հեշտացնում է այդ պայքարի պայմանները»․ դա միանգամայն ճիշտ է։ Իմ կարծիքով այստեղ նպատակահարմար է միաժամանակ ավելացնել, որ բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժումը խոշոր բարոյական աջակցություն է սոցիալիզմ և կոմունիզմ կառուցող ժողովուրդներին։

Ծրագրի նախագծի երկրորդ մասի 7-րդ գլխում նշված է՝ «Ղեկավարության կոլեկտիվության լենինյան սկզբունքները հետևողականորեն կենսագործելու, պարտիական ղեկավար օրգանների մեջ նոր, թարմ պարտիական ուժերի ավելի լայն հոսանքն ապահովելու, հին և երիտասարդ կադրերին ճիշտ զուգակցելու նպատակով, ինչպես նաև այն բանի համար, որ բացառվի առանձին աշխատողների ձեռքում իշխանության չափից շատ կենտրոնանալու հնարավորությունը և կանխվեն կոլեկտիվի վերահսկողությունից այդ աշխատողների դուրս գալու դեպքերը, պարտիան անհրաժեշտ է համարում իրականացնել հետևյալ միջոցառումները. ա) Պրակտիկայի մեջ մտցնել պարտիայի բոլոր ընտրովի օրգանների կազմի, սկզբնական կազմակերպություններից մինչև Կենտրոնական Կոմիտեն, սիստեմատիկ թարմացումը որոշակի համամասնություններով, ընդսմին ապահովելով ղեկավարության հաջորդականությունը»։ Եվ ահա սահմանված է, թե պարտիական օրգանի կազմը ամեն մի հերթական ընտրության ժամանակ ինչ չափով պետք է թարմացվի և պարտիական օրգաններում անընդմեջ քանի անգամ կարելի է ընտրվել։ Այս մասն ամբողջովին իր արտացոլումն է գտել նաև ՍՄԿՊ Կանոնադրության նախագծում։

Իմ կարծիքով Ծրագրի նախագծում կարելի է թողնել վերը նշված մեջբերումը որպես ելակետային, ծրագրային դրույթ, իսկ հաջորդ մասը, որտեղ կոնկրետացվում է այդ դրույթի իրականացումը, թողնել միայն Կանոնադրության նախագծում։

Իմ կարծիքով անընդմեջ ընտրվելուց հետո, երբ լրանում է պարտիական այս կամ այն օրգանում ընտրվածի ժամկետը, հետագայում ևս ընտրվելու բացառություն արվի միայն ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության կազմի համար։ Մյուս պարտիական օրգաններում անընդմեջ ընտրվելու ժամկետը լրանալուց հետո ոչ ոքի համար բացառություն չպետք է արվի։ Այլապես նախատեսվածից ավելի իրավունքից օգտվելը կդառնա մասսայական երևույթ։ Իմ կարծիքով սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների անընդմեջ ընտրվելու ժամկետը քիչ է։ Առաջին տարին նոր ընտրվածը սկսում է ձեռք բերել անհրաժեշտ փորձ, խորանալ տվյալ տնտեսության, հիմնարկության աշխատանքներում, ապա, երբ նա նոր պետք է ծավալվի, հնարավորություն ենք տալիս աշխատելու միայն մեկ տարի։ Իմ կարծիքով այդ ժամկետը պետք է հասցվի երեք տարվա։

Նոր Կանոնադրության նախագծում, որը նշանավորում է պարտիայի կազմակերպական լենինյան սկզբունքների հետագա զարգացման նոր աստիճան, հստակորեն որոշված են ՍՄԿՊ-ի ներքին կյանքի հիմնական օրենքները, նրա աշխատանքի ձևերն ու մեթոդները՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։

Հավանություն տալով Կանոնադրության նախագծին, ես կցանկանայի մի քանի դիտողություններ անել։ Նախագծի առաջին գլխի, որը կոչվում է «Պարտիայի անդամները, նրանց պարտականությունները և իրավունքները», առաջին կետում սահմանված է, թե ով կարող է ՍՄԿՊ անդամ լինել, իսկ 2-րդ և 3-րդ կետերում տրված է պարտիայի անդամի պարտականությունները և իրավունքները և ապա 4-րդ կետում, թե ինչպես է կատարվում պարտիայի անդամի ընդունելությունը։ Իմ կարծիքով ավելի ճիշտ կլիներ, եթե այն բոլոր կետերը, որոնք վերաբերվում են նրան, թե ով կարող է լինել պարտիայի անդամ և ինչպես է կատարվում պարտիայի անդամի ընդունելությունը, շարադրել հաջորդաբար և նոր միայն տալ պարտիայի անդամի պարտականությունները և իրավունքները։ Այդ նույն գլխի երկրորդ ծանոթության մեջ նշված է՝ «ՍՄԿՊ Կենտկոմի անդամները և անդամության թեկնածուները հրաշխավորելուց ձեռնպահ են մնում»։ Նախ նշված չէ, թե ինչո՞ւ են ձեռն-

պահ մնում և դա տեղիք է տալիս տարբեր մտքերի, և երկրորդ, իմ կարծիքով, ոչ մի անհրաժեշտություն չկա սահմանափակել ՍՄԿՊ Կենտկոմի անդամների և անդամության թեկնածուների իրավունքներն այս հարցում։ ՍՄԿՊ Կենտկոմի անդամները և անդամության թեկնածուները ոչ միայն չպետք է ձեռնպահ մնան, այլև պետք է երաշխավորեն լավագույններից լավագույններին, որը կունենա դաստիարակչական մեծ նշանակություն։

Կանոնադրության նախագծի 2-րդ գլխի, որը նվիրված է պարտիայի անդամության թեկնածուներին, 14-րդ կետում ասված է. «Պարտիայի մեջ ընդունվող բոլոր անձինք անցնում են թեկնածուական ստաժ, որն անհրաժեշտ է ՍՄԿՊ Ծրագրին ու Կանոնադրությանը ծանոթանալու և պարտիայի անդամ ընդունվելուն նախապատրաստվելու համար»։

Երբ որևէ մեկն ընդունվում է ՍՄԿՊ անդամության թեկնածու, ապա նա պարտավոր է ոչ թե ծանոթանալ, այլ ուսումնասիրել և ընդունել պարտիայի Ծրագիրը և Կանոնադրությունը։ Իմ կարծիքով ճիշտ չէր լինի ասել, որ թեկնածուական ստաժը անհրաժեշտ է ՍՄԿՊ Ծրագրին և Կանոնադրությանը ծանոթանալու համար։ Ավելի ճիշտ կլինի 14-րդ կետը ձևակերպել այսպես. «Պարտիայի մեջ ընդունվող բոլոր անձինք անցնում են թեկնածուական ստաժ, որն անհրաժեշտ է թեկնածուի անձնական հատկությունները ստուգելու և պարտիայի անդամ ընդունվելուն նախապատրաստվելու համար»։

Կանոնադրության նախագծի 3-րդ գլխի, որը վերաբերում է պարտիայի կազմակերպական կառուցվածքին և ներպարտիական դեմոկրատիային, 29-րդ կետում ասված է. «Միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմները, պարտիայի երկրկոմները, մարզկոմները, օկրուգկոմները, քաղկոմները, շրջկոմները պարտիական կազմակերպություններին սիստեմատիկաբար տեղյակ են պահում իրենց աշխատանքի մասին»։ 4-րդ գլխի, որտեղ խոսվում է պարտիայի բարձրագույն օրգանների մասին, 36-րդ կետում նշված է. «ՍՄԿՊ Կենտկոմը կանոնավոր կերպով պարտիական կազմակերպություններին տեղյակ է պահում իր աշխատանքի մասին»։ Իմ կարծիքով 36-րդ կետը պետք է միացնել 29-րդ կետին, և շարադրել հետևյալ կերպ։ «ՍՄԿՊ Կենտկոմը, միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմները» և ապա ինչպես տեքստում։ Կանոնավոր կերպով պարտիական ղեկավար օրգանների կողմից պարտիական կազմակերպություններին իրենց աշխատանքի մասին տեղյակ պահելը ներպարտիական դեմոկրատիայի կարևոր սկզբունքներից է և այն պետք է շարադրել 3-րդ գլխում, որը և նվիրված է ներպարտիական դեմոկրատիային։ 4-րդ գլխի 31-րդ կետում ասված է, որ «Պարտիական համագումարի հրավիրումը և օրակարգը հայտարարվում են ոչ ուշ քան համագումարից մեկ և կես ամիս առաջ»։ Իմ կարծիքով այդ ժամկետը պարտիական համագումարի համար, որի հրավիրումը մեծագույն իրադարձություն է ամբողջ պարտիայի և ժողովրդի կյանքում, քիչ է։ Այդ ժամկետը պետք է սահմանվի ոչ քիչ, քան երեք ամիս։

49-րդ կետում նշված է, որ պարտիայի օկրուգային, քաղաքային և շրջանային կոմիտեների քարտուղարները հաստատվում են մարզկոմի, երկրկոմի, միութենական ռեսպուբլիկայի Կոմպարտիայի Կենտկոմի կողմից։ Գտնում ենք, որ 45-րդ կետում էլ պետք է ավելացնել, որ մարզային, երկրամասային կոմիտեների, միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմների քարտուղարները հաստատվում են ՍՄԿՊ Կենտկոմի կողմից։



62-րդ կետում ասված է, որ «ՀամԼԿԵՄ-ը իր աշխատանքը կատարում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ ՀամԼԿԵՄ տեղական կազմակերպությունների աշխատանքին ուղղություն են տալիս և վերահսկում համապատասխան ռեսպուբլիկական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային և շրջանային պարտիական կազմակերպությունները»։ Իմ կարծիքով ճիշտ կլիներ «շրջանային» բառից հետո ավելացնել «սկզբնական» բառը, որովհետև անմիջականորեն կոմերիտական կազմակերպություններին ամենօրյա ղեկավարություն և ուղղություն տալիս են նաև սկզբնական պարտիական կազմակերպությունները։

Այժմ ՍՄԿՊ Ծրագրի և Կանոնադրության նախագծերը գտնվում են մեր շրջանի բոլոր կոմունիստների և անպարտիականների ուշադրության կենտրոնում։ Նրանք մեծ ոգևորությամբ կարդում են, ուսումնասիրում, քննարկում մեր դարաշրջանի այդ մեծագույն փաստաթղթերը։

Պարտիայի շրջկոմը պրոպագանդիստների և ագիտկոլեկտիվների ղեկավարների, ագիտատորների, կուլտուր-լուսավորական աշխատողների համար հրավիրել է սեմինար, որտեղ մանրամասն խոսվել է նախագծի մասսայականացման գործում նրանց խնդիրների մասին։

Շրջկոմի դասախոսական խմբի ամբողջ թեմատիկան վերակառուցվել է և ամբողջովին բխում է Ծրագրի նախագծից։

Մենք ՀՍՍՌ Գիտությունների ակադեմիայի փիլիսոփայության սեկտորի աշխատողների հետ պատրաստում ենք գիտական կոնֆերանս՝ «Կոմունիստական մեր կյանքում» թեմայով։ Բացի դրանից, պարտիական ակտիվի համար նախապատրաստվում է՝ «Պարտիան կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում» թեմայով տեսական կոնֆերանս։

Պարտիական կազմակերպություններն ոչ միայն մասսայականացնում և աշխատավորական զանգվածներին պարզաբանում են ՍՄԿՊ Ծրագրի նախագծի վեհ գաղափարները, այլև մոբիլիզացնում են նրանց բոլոր ուժերը, գլխավորում նրանց քաղաքական և աշխատանքային խանդավառությունը մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման հոյակապ ծրագրի իրականացման համար։

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ
ՀԿՊ Շամշադինի շրջկոմի քարտուղար

## ԱՐՏԱՇԱՏՑԻՆԵՐԻ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մեր լայնարձակ Հայրենիքի բոլոր աշխատավորների հետ խնդումնալից օրեր են ապրում նաև արտաշատցիները։ Ամենուրեք պարտիական կազմակերպությունների, կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների ժողովներում քննարկվում և ուսումնասիրվում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի ու Կանոնադրության Նախագծերը։

Հանդես գալով ժողովներում, շրջանի կոմունիստներն ու անպարտիականները, կոլտնտեսականներն ու բանվոր-ծառայողները միահամուռ հավանություն են տալիս ՍՄԿՊ Ծրագրի ու Կանոնադրության նախագծերին։ Նրանք իրենց հուզիչ և անկեղծ ելույթներում ասում են. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծը մեր դարաշրջանի մարքս-լենին-

յան կարևորագույն տնտեսական-քաղաքական փաստաթուղթն է, որում գիտական խորությամբ լուսաբանված են սոցիալիզմի նվաճումները, մեր երկրում կոմունիզմի կառուցման, մարդկության բոլոր երազանքների իրականացման ուղիները։

Կոմունիստները մեծ ակտիվություն են հանդես բերում պարտիայի Կանոնադրության նախագծի քննարկման ժամանակ։ Նրանք հավանություն տալով նախագծին, միաժամանակ անում են իրենց առաջարկությունները, լրացումները, դիտողությունները։

Աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործկոմի պարտ-ժողովում մի խումբ կոմունիստներ առաջարկել են սկզբնական պարտիական կազմակերպություններում վերացնել փակ (գաղտնի) քվեարկության կարգը։ Նրանք այդ առաջարկությունը հիմնավորում են այն բանով, որ այժմ կոմունիստները քաղաքականապես ավելի հասունացած են, սկզբունքային հարցերում համարձակ, ոչ գործունյա ղեկավարների նկատմամբ անհանդուրժող։

Դալարի գինու գործարանի մի քանի կոմունիստներ առաջարկել են Կանոնադրության նախագծի 10-րդ կետում փոփոխություն մտցնել, ըստ որի պարտիայից վտարում կատարել ոչ թե ձայների ²/₃-րդ քանակով, այլ պարզ մեծամասնության դեպքում։

ՍՄԿՊ անդամ Կամսար Հայրապետյանը (Նովրուզլու) առաջարկում է, որպեսզի Կանոնադրությունում մտցվի այսպիսի կետ. այն կոմունիստները, որոնք կդատվեն, իրենց պատիժը կրելուց հետո իրավունք չպետք է ունենան ՍՄԿՊ շարքերն ընդունվելու ոչ հին ստաժով և ոչ էլ նոր հիմունքներով։

Կոմունիստ Ալեքսան Ավագյանը (Ն. Դվին) առաջարկում է, որպեսզի Կանոնադրության նախագծի 4-րդ կետում նշվի, որ ՍՄԿՊ անդամ ընդունվողը համատեղ աշխատանքում 3 երաշխավորողներ ներկայացնելու հետ միասին ներկայացնի նաև բնութագիր իր գործնական և քաղաքական հատկանիշների մասին նախկին աշխատանքի վայրից կամ ուսումնական հաստատությունից։ Ընկ. Ավագյանն իր առաջարկը պատճառաբանում է նրանով, որ հաճախ այս կամ այն մարդուն պարտիայի մեջ ընդունելուց հետո պարզվում է, որ նա անցյալում վատ արարքներ է կատարել։

Կոմունիստ Սարգիս Գալստյանը (Բուրաստան) առաջարկում է Կանոնադրության մեջ կետ մտցվի այն մասին, որ ՍՄԿՊ Կենտկոմին իրավունք վերապահվի առանց տեղական պարտիական կազմակերպությունների ու նրանց կոմիտեների որոշման, պարտիայի անդամ ընդունել Սովետական Միության այն քաղաքացիներին, որոնք Հայրենիքի հանդեպ կատարել են բացառիկ ծառայություններ։ Իրականում այժմ այդպես կատարվում է, հարկավոր է կանոնադրական ուժ տալ դրան։

Կոմունիստ Խանաև Նազարեթյանը (Բուրաստան) առաջարկում է Կանոնադրության նախագծի 25-րդ կետում նշված սկզբնական պարտիական կազմակերպությունների բյուրոների և կոմիտեների կազմի թարմացումը ոչ թե 50 տոկոսով կատարվի, այլ ²/₃-ով, պատճառաբանելով, որ շատ կազմակերպություններում ձեռնհաս կոմունիստներ բացակայում են և ղեկավար կազմում կարող են անհաջող ընկերներ ընտրվել։

Կոմունիստ Հրանտ Գրիգորյանը (Մրգավան) առաջարկում է Կանոնադրության նախագծի 9-րդ կետը խմբագրվի այնպես, որ եթե զանցանք կատարած պարտիայի անդամը փոխադրվում է թեկնածու (որպես տույժ), նրան կրկին



անդամ ընդունել ոչ թե հին ստաժով, այլ նոր, որը մեծ դաստիարակչական նշանակություն կունենա կոմունիստների համար։ Նույն ընկերը առաջարկում է պարտիայի օկրուգային, քաղաքային և շրջանային կոմիտեների քարտուղարների համար սահմանել ոչ թե առնվազն երեք տարվա պարտիական ստաժ, ինչպես նշված է Կանոնադրության 49-րդ կետում, այլ 5 տարվա։ Այդ պատճառաբանվում է այն բանով, որ ունենալով 5 տարվա պարտիական ստաժ, կոմունիստը անցած կլինի կյանքի բովով, քաղաքականապես ավելի կոփված կլինի և պրակտիկ աշխատանքի հարուստ փորձ կունենա։

Ընկ. Սահակ Գրիգորյանը (Մրգավան) առաջարկում է Կանոնադրության նախագծի 25-րդ կետում գրվի ոչ միայն Կենտկոմի Նախագահության անդամների ու թեկնածուների ընտրության ժամկետների մասին, այլև Կենտկոմի քարտուղարների ընտրության ժամկետների մասին։

Կոլյա Ավետիսյանը (Մրգավան) առաջարկում է՝ Կանոնադրության նախագծում նշվի, որ կոմունիստները 3 ընտրաշրջանից ավելին չպետք է ընտրվեն պարտիական համապատասխան կոմիտեներում։

Կոմունիստներ Գ. Մանուկյանը, Լ. Հարությունյանն ու ուրիշներ առաջարկում են գյուղական վայրերում բոլոր կոմունիստներին հաշվի առնել մեկ պարտիական կազմակերպության մեջ, որովհետև նրանց հետաքրքրում է թե կոլտնտեսային արտադրության, թե՛ գյուղի բարեկարգման, թե՛ դպրոցի ու մանուկների դաստիարակության հարցերը։ Եթե գյուղի բոլոր կոմունիստները մեկ կազմակերպությունում ընդգրկված լինեն, պարտիական ուժերը ավելի համախմբված կլինեն և միասնական ջանքերով կկատարեն պարտիական որոշումները։

Կոմունիստ Մ. Աբրահամյանը (Այգեզարդ) առաջարկում է կոլտնտեսություններում. մշակել շահագրգռական այնպիսի միջոցներ, որոնք նպաստեն գյուղատնտեսական արտադրանքի շեշտակի բարձրացմանը, յուրաքանչյուր գյուղի տերիտորիայում ստեղծել մեկ միասնական պարտիական կազմակերպություն՝ գյուղերի առջև դրված բոլոր խնդիրների լուծումն ապահովելու համար։ Նույն ընկերն առաջարկում է վերացնել գաղտնի քվեարկությունը պարտիական օրգանների ընտրության ժամանակ, որը բավականին վնասակար ազդեցություն է թողնում առերես քննադատության ծավալման համար կադրերին շիտակ և ուղղամիտ կերպով դաստիարակելու վրա։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի ու Կանոնադրության նախագծերի քննարկումը և ուսումնասիրումը արտադրական բուռն խանդավառություն, քաղաքական մեծ ակտիվություն և հայրենասիրական հպարտություն է առաջ բերել շրջանի կոմունիստների, բոլոր կոլտնտեսականների ու բանվոր-ծառայողների մեջ։ Նրանք իրենց ջանքերը գործադրում են արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու ՍՄԿՊ XXII համագումարը։ Այդ ջանքերի նախնական արդյունքներն արդեն առկա են։ Շրջանը գերակատարել է մրգի վաճառքի պետական առաջադրանքը, հաջողությամբ կատարվում են բոստանա-բանջարանոցային կուլտուրաների արտադրության և վաճառքի պլանները։ Հոգատար խնամքի շնորհիվ փարթամորեն աճում են բամբակի պլանտացիաներն ու խաղողի այգիները, որոնց օր-օրի հասունացող ճնգուղներն ու ողկույզները առատ բերք են խոստանում։

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ

ՀԿՊ Արտաշատի շրջկոմի քարտուղար

## ԸՆԴՈՒՆՈՒՄ ԵՆՔ ՍՐՏԱՆՑ

Անգնահատելի է ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծի նշանակությունը։ Նրա մեջ մարդկության ամբողջ պատմության ընթացքում առաջին անգամ տրվում է կոմունիզմի կառուցման գիտականորեն հիմնավորված կոնկրետ պլանը։

Մեր դարաշրջանի այդ մեծագույն փաստաթուղթը, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի այդ նոր ակտն իր մեջ գիտականորեն ամփոփում է մեր պարտիայի կոլեկտիվ միտքը, մեր ժողովրդի հանճարեղ խոհերը, նրա հերոսական մղումները։

Այսօր մենք սրտի անսահման խնդությամբ և մեծ հպարտությամբ Ծրագրի նախագծի եզրափակիչ տողերում կարդում ենք հետևյալ խոսքերը. «Պարտիան հանդիսավոր կերպով հռչակում է, որ սովետական մարդկանց ներկա յիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք»։

Սովետական մարդիկ գիտեն, որ մեր պարտիայի խոսքը և գործը իրարից չեն տարբերվում, իսկ պարտիան հաստատապես գիտե, որ իր նոր Ծրագիրը սովետական մարդիկ կիրագործեն։ Այդ են ապացուցում այն բուռն արձագանքները և համաժողովրդական այն հավանությունը, որին մենք ականատես ենք մեր երկրի տարբեր ծայրերում։

ՍՄԿՊ նոր Ծրագրի և Կանոնադրության նախագծերը հսկայական խանդավառությամբ և սրտի անհուն հպարտությամբ ընդունեցին Սպիտակի շրջանի աշխատավորները, պարտիական կազմակերպությունները, որոնք կազմակերպական ու քաղաքական ակտիվ աշխատանք են ծավալում այս տարվա բնակլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով ստեղծված դժվարությունները հաղթահարելու և գյուղատնտեսական արտադրության վերելքն ապահովելու համար։

Շրջանի պարտիական կազմակերպությունը ձեռնամուխ է եղել ՍՄԿՊ Ծրագրի ու Կանոնադրության նախագծերի ուսումնասիրությանն ու քննարկմանը։ Քննարկման ընթացքում կոմունիստներն անում են մի շարք առաջարկություններ։

Պարտիայի Կանոնադրության նախագծի 3-րդ գլխում նշվում է, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները կարող են անընդմեջ ընտրվել ոչ ավելի քան երկու ընտրաշրջան. մեր կարծիքով սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների համար 2 տարին քիչ ժամանակաշրջան է։ Նրանք երկու տարվա ընթացքում տիրապետելով ղեկավարության արվեստին և դառնալով հմուտ, հետագայում ավելի հաջողությամբ կգլխավորեն կազմակերպության աշխատանքները, ուստի նպատակահարմար է սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների համար սահմանել 4 տարի անընդմեջ ընտրվելու իրավունք։

Պարտիայի Կանոնադրության նախագծի 4-րդ գլխի 56-րդ կետում ասվում է՝ ընթացիկ աշխատանքը վարելու համար սկզբնական, ցեխային պարտիական կազմակերպությունը մեկ տարով ընտրում է բյուրո՝ պարտիական ժողովի սահմանած քանակությամբ։ Մեր կարծիքով ավելի ճիշտ կլինի, եթե տարին մեկ անգամ անցկացվեր հաշվետու ժողով (առանց ընտրության) և 2 տարին մեկ անգամ հաշվետու-ընտրական ժողովներ, որով կպաշտպանվեր նաև պարտիական մասսաների առջև պարբերաբար հաշվետվություններով հանդես գալու սկզբունքը։



Կանոնադրության նախագծի 25-րդ կետի երկրորդ մասում ասված է, որ յուրաքանչյուր հերթական ընտրության ժամանակ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և նրա Նախագահության կազմը նորացվում է առնվազն մեկ քառորդով։ Նախագահության անդամները, որպես կանոն, անընդմեջ ընտրվում են ոչ ավելի, քան երեք ընտրաշրջան։ Մեր կարծիքով կարիք չկա սահմանափակում մտցնել պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Նախագահության անդամների անընդմեջ ընտրության համար։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը զարգացման նոր, ավելի բարձր էտապ է նաև պարտիայի, նրա քաղաքական, գաղափարական և կազմակերպական աշխատանքի առումով։ Պարտիայի Կանոնադրության նախագծում ստեղծագործորեն ընդհանրացված է պարտիական շինարարության հարուստ փորձը։ Պարտիական կյանքի ու ղեկավարման լենինյան սկզբունքների, պարտիայի առջև ծառացած նոր խնդիրների հիման վրա որոշված են պարտիայի կազմակերպական կառուցվածքը, նրա ներքին կյանքի գլխավոր ղեկավար կանոնները, պրակտիկ գործունեության եղանակները։

Խ. ՍԱՖԱՐՅԱՆ

ՀԿՊ Սպիտակի շրջկոմի քարտուղար

## ՄԵԿ ԼՐԱՑՈՒՄ

Ամենայն ուշադրությամբ ուսումնասիրեցի ՍՄԿՊ նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերը։ Այդ պատմական փաստաթղթերը բխում են մեր սրտից, արտահայտում ամբողջ աշխարհի աշխատավորության շահերը և ցույց տալիս պարտիայի մեծ հոգատարությունը մարդկության ապագայի նկատմամբ։

Ամբողջությամբ հավանություն տալով պարտիայի նոր Ծրագրի ու Կանոնադրության նախագծերին, անում եմ միայն մեկ առաջարկություն։

Նպատակահարմար եմ գտնում Ծրագրի նախագծի երկրորդ մասի, I պարագրաֆի 2-րդ կետի բ) ենթավերնագրի (Կոլտնտեսությունների ու սովխոզները կոմունիզմի ճանապարհին, գյուղի հասարակական հարաբերությունների վերափոխումը) տակ շարադրված տեքստում ավելացնել հետևյալ կետը. կոլտնտեսականներն էլ բանվոր-ծառայողների հետ համահավասար կօգտվեն ամենամյա արձակուրդից, պահպանելով նրանց ամենամսյա վարձատրության չափը։ Կոլտնտեսականները հաշմանդամության և ծերության ժամանակ պետական բյուջեից կստանան կայուն չափի կենսաթոշակ։

Այս առաջարկությունը անելիս մենք նկատի ունենք այն, որ բոլոր կոլտնտեսությունները չեն, որ վերը նշված նպատակների համար համապատասխան հատկացումներ են կատարում։

Վ. ՕՐԴՈՅԱՆ

ՍՄԿՊ անդամ, Արտաշատի շրջանից

## ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՈՒ ԼՐԱՑՈՒՄՆԵՐ

Ամբողջովին հավանություն տալով ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախագծին, ցանկանում եմ անել մի քանի դիտողություններ ու լրացումներ։

Նախագծի առաջին կետում ասված է, որ «ՍՄԿՊ անդամ կարող է լինել Սովետական Միության ամեն մի քաղաքացի, որն ընդունում է պարտիայի

Ծրագիրն ու Կանոնադրությունը, ակտիվորեն մասնակցում է կոմունիզմի կառուցմանը...»— այս պարբերության մեջ իմ կողմից ընդգծված նախադասությունն, ըստ իս, պետք է փոխարինել և պահպանել նախկին ձևակերպումը, այն է՝ «ակտիվորեն նպաստում է դրանց իրագործմանը» և այնուհետև այնպես ինչպես նախագծում է։ Այսպիսի ձևակերպումը ավելի լրիվ ու ամբողջական կլինի, քանի որ Կանոնադրությունն անմիջականորեն բխում է Ծրագրի դրույթներից և պարտիայի անդամի պարտականությունն է իր գործունեությամբ նպաստել Ծրագրում և Կանոնադրության մեջ շարադրված խնդիրների իրագործմանը։

Կանոնադրության նախագծի 2-րդ կետի ա) ենթակետի սկիզբը սկսվում է այսպես. «պայքարել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար...»։ Ինձ թվում է նման ձևակերպումը լրիվ չէ և չի արտացոլում պարտիայի Ծրագրի էությունը։ Խոսքը չի վերաբերում միայն կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը, այլ Ծրագրում ասվում է, որ պարտիայի նպատակն է կոմունիստական հասարակարգի կառուցումը։ Ես առաջարկում եմ այդ ենթակետը ձևակերպել այսպես. «Ամեն կերպ պայքարել կոմունիստական հասարակարգի կառուցման համար, աշխատել և ապրել կոմունիստաբար»։ Իսկ մնացածը չշարունակել։

Երրորդ կետի գ) ենթակետի վերջում պետք է ավելացնել՝ պատասխանատվության ենթարկել, ընդհուպ ՍՄԿՊ շարքերից վտարել, այն կոմունիստներին, որոնք հաշտվում են և չեն վեր հանում գործերում տեղ գտած անբարեհաջող վիճակը։ Չորրորդ կետում, ուր խոսվում է պարտիայի անդամի ընդունելության կարգի մասին, ունեմ երկու ուղղում։ Ես առաջարկում եմ, որ կոմերիտական երկարամյա լավագույն աշխատողներին պարտիայի շարքերն ընդունել միանգամից, առանց թեկնածուական շրջանի, կամ կրճատված թեկնածուական ժամանակաշրջանով՝ կոմերիտական շրջանային (քաղաքային) կոմիտեների երաշխավորությամբ։ Երկրորդ՝ այնտեղ, որտեղ ասված է, թե երաշխավորելուց պետք է ձեռնպահ մնան ՍՄԿՊ Կենտկոմի անդամները և թեկնածուները, ըստ իս, ճիշտ չէ. այդ նույն Կանոնադրության նախագծում կարդում ենք, որ պարտիան ունի մեկ կարգապահություն, մեկ օրենք բոլոր կոմունիստների համար, անկախ նրանց ծառայություններից և գրաված պոստերից։ Առաջարկում եմ հանել այդ վերապահումը։

14-րդ կետում խոսվում է այն մասին, որ թեկնածուական ստաժն անհրաժեշտ է ՍՄԿՊ Ծրագրին ու Կանոնադրությանը ծանոթանալու և պարտիայի անդամ ընդունվելուն նախապատրաստվելու համար։ Պարտիայի մեջ ընդունվողը պետք է ծանոթ լինի և հստակ պատկերացում ունենա Ծրագրի, Կանոնադրության և պարտիայի քաղաքականության մասին։ Այդ առումով էլ առաջարկ եմ մտցնում 14-րդ կետը ձևակերպել հետևյալ կերպ՝ «Պարտիայի մեջ ընդունվող անձինք անցնում են թեկնածուական ստաժ, որ կազմակերպությանն անհրաժեշտ է՝ ստուգել նրա անձնական հատկությունները և գործնական ընդունակությունները, քաղաքական մակարդակը։ Պարտիայի անդամ ընդունվողը պետք է ուսումնասիրի պարտիայի Ծրագիրն ու Կանոնադրությունը»։ Այսպիսի ձևակերպումը համապատասխանում է պարտիայի կազմի ճիշտ ընտրության լենինյան սկզբունքին։

Ես գտնում եմ, որ ճիշտ չէ պարտիական ընտրովի օրգաններում ղեկավարության հաջորդականության սահմանումը։ Ինչ խոսք, մշտապես պետք է



թարմացնել, նորացնել պարտիական օրգանների կազմը, բայց ռեգլամենտացիայի ենթարկել, թե նրանք կարող են անընդմեջ ընտրվել միայն երկու-երեք ընտրաշրջան, ճիշտ չէր լինի։ Ինձ թվում է, թե պետք է մեկընդմիշտ վերացվի որոշ տեղերում տեղ գտած այն պրակտիկան, երբ պարտիական օրգաններում, սկզբնական պարտկազմակերպություններում ընտրվելու համար առաջադրվում են պատրաստի ցուցակներ, որոնք կազմվում են նախկին կազմի կողմից, որի որոշ մասը պետք է թարմացվի։ Դա չի նշանակում, որ հարկավոր չէ ժողովը կամ թեկնածուները նախապատրաստել։ Այս խիստ անհրաժեշտ է պարտիական կյանքի բոլոր ժամանակների համար։

Այսպիսով, ես առաջարկում եմ Կանոնադրությունից հանել ընտրաշրջանների մասին վերապահումը և թերևս առանձին կետ մտցնել (գուցե և ենթակետ), որով սահմանվի, որ ընտրությունների ժամանակ ամեն մի կոմունիստ ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում իրավունք ունի առաջադրելու միայն մեկ թեկնածու։

Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

Էջմիածնի «Պլաստմասսա» գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոյի քարտուղար։

## ԱՅԴՊԵՍ ԱՎԵԼԻ ՃԻՇՏ Է

ՍՄԿՊ Կանոնադրության նախագծի սկզբում շարադրված քննադատության և կոլեկտիվ ղեկավարության վերաբերյալ դրույթները կրկնվում են հաջորդ բաժիններում։ Տեքստը կշահի, եթե այդ կրկնությունները վերացվեն և 28-րդ կետը շարադրվի այսպես. «Կոլեգիալ ղեկավարությունը չի բացառում ղեկավար աշխատողի անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ և չի էլ հանդուրժում ներպարտիական դեմոկրատիայի խախտումները, փառասիրությունը, քննադատության ճնշումը, կամայականությունը և աշխատանքի արատավոր ոճը»։ Այդպիսի պահանջը նպաստում է պարտիական աշխատողների ճիշտ դաստիարակությանը։ 29-րդ կետի սկզբից պետք է ավելացնել «ՍՄԿՊ Կենտկոմը» բառերը և վերացնել 36-րդ կետը, որովհետև դրանք ունեն նույն բովանդակությունը՝ ներպարտիական դեմոկրատիայի վերաբերյալ։ Պարտիայի միասնականության պահպանման մասին նշված է և ներածականում և 27-րդ կետի վերջին նախադասության մեջ։ Կարծում եմ վերջինն ավելորդ է, քանի որ պարտիան դարձել է ժողովրդի պարտիա և նրա պառակտման համար այլևս հող չկա, գաղափարական միասնությունը և միաձնությունը դարձել է նրա գոյության անխախտ օրենքը։

ՌՍՖՍՌ մեր եղբայրական ռեսպուբլիկաներից մեկն է, հետևաբար պետք է ունենա իր Կենտկոմը և ոչ թե ՍՄԿՊ Կենտկոմի ՌՍՖՍՌ Բյուրո։ Այդ կապակցությամբ 39-րդ կետի վերջին մասը պետք է հանվի։

Գնալով ավելի է բարձրանում պարտիական օրգանների դերն ու պատասխանատվությունը կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության և քննադատությունը զարգացնելու գործում։ Կատարման ստուգումը սիստեմատիկ կատարելու և պարտիական օրգանների աշխատանքն ավելի ճկուն դարձնելու համար անհրաժեշտ է ստեղծել համապարտիական վերահսկիչ օրգան, որը կփոխարինի վերստուգիչ հանձնաժողովին և պետական վերահսկողու-

թյան կոմիտեին, օժտվելով ավելի լայն ֆունկցիայով՝ ապահովելու պար-
տիական և սովետական բոլոր օրգանների գործունեության վերահսկումը
պարտիայի քաղաքականության որոշումների, պարտիական և սովետական
դեմոկրատիայի պահպանման ու կադրերի ընտրության հարցերում: Այդ օր-
գանը կընտրվի համագումարի կողմից և կգործի նրա լիազորությամբ, հաշ-
վետու լինելով նրա առաջ: Այդ մասին Կանոնադրության մեջ անհրաժեշտ
կետ պետք է մտցնել:
Ելնելով պարտիական կյանքի լենինյան նորմերից անհրաժեշտ է բոլոր
պարտիական կոմիտեների կազմը յուրաքանչյուր ընտրության ժամանակ նո-
րացնել կեսից ավելի, իսկ առանձին մարդկանց անընդմեջ ղեկավար աշխա-
տանքում ընտրվելու առավելագույն ժամանակը սահմանել 2 ընտրաշրջանից
ոչ ավել: Նախագծում ասված «Պարտիայի այս կամ այն գործիչները, իրենց
ճանաչված հեղինակության, քաղաքական, կազմակերպչական և այլ բարձր
հատկությունների շնորհիվ, կարող են ղեկավար օրգաններում անընդմեջ
ընտրվել ավելի երկար ժամանակով» նախադասությունը պետք է հանել, քանի
որ այն պարտիայի անդամների միջև արհեստական ստորաբաժանում է
առաջացնում, արտոնյալ վիճակ մի մասի համար: Սա պարտիական դեմո-
կրատիայի խախտում է և կարգապահության տարատեսակություն:
Կոմիտեների քարտուղարներ ընտրելու վերաբերյալ անհրաժեշտ է նա-
խագծով առաջադրված պարտիական ստաժը կրկնապատկել և որոշակի տա-
րիքի հասած հասակ ունենան: Որքան տարօրինակ է, երբ սկզբնական պարտ-
կազմակերպության քարտուղարը կարող է ունենալ մեկ տարվա ստաժ, մինչ-
դեռ պարտիայի մեջ ընդունվողին երաշխավորելու իրավունք չի ունենա, որով-
հետև դրա համար անհրաժեշտ է 3 տարվա պարտիական ստաժ: Անհրաժեշտ
եմ գտնում ռեսպուբլիկական Կենտկոմի, մարզկոմի, երկրկոմի քարտուղար-
ների համար սահմանել առնվազն 10 տարվա ստաժ և 40 տարեկան հասակ,
շրջկոմ-քաղկոմների, օկրուգկոմների քարտուղարներին 7 տարվա ստաժ, 35
տարեկան հասակ, իսկ սկզբնական պարտկազմակերպության քարտուղարնե-
րը պետք է ունենան 5 տարվա պարտստաժ և լինեն 30 տարեկան:
Նույնպիսի հատկանիշներ պետք է ունենան նաև կոմիտեների բաժինների վա-
րիչները:
Կանոնադրության 26-րդ կետի երրորդ նախադասությունը, որ վերաբեր-
վում է ՍՄԿՊ Կենտկոմի կազմից Կենտկոմի անդամին, անդամության թեկ-
նածուին հանելուն, պետք է լրացվի «Նախօրոք պարտիական կազմակերպու-
թյունների հետ խորհրդակցելուց հետո ստացված արդյունքների հիման վրա»
արտահայտությամբ: Այսպիսի լրացումը ճիշտ է արտացոլում արդեն ճանաչ-
ված հեղինակություն ձեռք բերած ղեկավար կոմունիստի նկատմամբ լենին-
յան մոտեցումը և պարտիական դեմոկրատիան:
ՍՄԿՊ Կանոնադրության նախագիծը կազմված է Լենինի մշակած կազ-
մակերպական և իդեական սկզբունքների ստեղծագործական զարգացման
շնորհիվ: Այս մեծ փաստաթղթում կոմպարտիայի գաղափարական միասնու-
թյունն ու ժողովրդականությունն է արտացոլված: Ահա թե ինչու միահամուռ
հավանության է արժանանում այն բոլորի կողմից:

Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Երևանի № 16 բանվորի դպրոցի ուսուցիչ,
ՍՄԿՊ անդամ, պրոպագանդիստ



## ԻՄ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ՍՄԿՊ նոր Ծրագրի և Կանոնադրության նախագծերը մեր ժամանակի խոշոր նշանակություն ունեցող փաստաթղթեր են: Այնտեղ գիտականորեն, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի տգով նշված են կոմունիզմի կառուցման ուղիները:

Սրտի մեծ բերկրանքով հավանություն տալով այդ մեծագույն փաստաթղթերին, միաժամանակ անում եմ մի քանի առաջարկություն:

1. Մեր կարծիքով Ծրագրի և Կանոնադրության նախագծերի այն հիմնալի ձևակերպումներից հետո, որտեղ ղեկավար պոստերում մնալու որոշակի ժամկետ է սահմանված, կարիք չկա հետևյալ ձևակերպմանը. «Պարտիական կազմակերպությունը կարող է, ելնելով քաղաքական և գործնական հատկություններից, այս կամ այն աշխատողի ընտրել ղեկավար օրգանների կազմում նաև ավելի երկար ժամանակով»:

Ըստ իս, այս վերապահումը կարող է տեղերում չարաշահվել հենց այն աշխատողների կողմից, որոնք ամենից քիչ տվյալներ, ունակություններ ունեն ղեկավարելու համար, որոնք անհամեմատ քիչ ծառայություններ են մատուցել պարտիային ու ժողովրդին: Այս առումով խիստ արժեքավոր է ու բնորոշ պարտիայի Ծրագրի նախագծի հետևյալ դրույթը. «Պարտիական կյանքի լենինյան սկզբունքների հետ անհամատեղելի են անհատի պաշտամունքը և դրա հետ կապված՝ ղեկավարման կոլեկտիվության, ներպարտիական դեմոկրատիայի ու սոցիալիստական օրինականության խախտումները: Անհատի պաշտամունքը տանում է դեպի պարտիայի և ժողովրդական մասսաների դերի նսեմացում, կաշկանդում է պարտիայի գաղափարական կյանքի զարգացումը և աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը:

Ղեկավարության կոլեկտիվության լենինյան սկզբունքները հետևողականորեն կենսագործելու, պարտիական ղեկավար օրգանների մեջ նոր, թարմ պարտիական ուժերի ավելի լայն հոսանքը ապահովելու, հին և երիտասարդ կադրերին ճիշտ զուգակցելու նպատակով, ինչպես նաև այն բանի համար, որ բացառվի առանձին աշխատողների ձեռքում իշխանության չափից շատ կենտրոնանալու հնարավորությունը և կանխվեն կոլեկտիվի վերահսկողությունից այդ աշխատողների դուրս գալու դեպքերը», պարտիան անհրաժեշտ է համարում ավելի ընդլայնել իր դեմոկրատիայի շրջանակները: Մինչդեռ, մեզ թվում է, որ մեր նշած վերապահումը հակասում է Ծրագրից մեր մեջբերած վերոհիշյալ սկզբունքին:

Մեր կարծիքով, Ծրագրի նախագծում որոշակի ժամկետ (այն էլ ոչ շատ երկար) պետք է սահմանվի երկրի բոլոր ղեկավար պոստերում աշխատողներին թողնելու համար, ներքևից մինչև վերև:

Մեր փառապանծ պարտիան, Սովետական պետությունը աճեցրել են ջնորհալի կադրեր մեր կյանքի բոլոր բնագավառների համար: Այժմ մեր երկրում չկա մի պոստ, մի բնագավառ, որի աշխատողը անփոխարինելի համարվի, եթե ելնենք ոչ թե անհատի պաշտամունքի, այլ մարքսիզմ-լենինիզմի դիրքերից:

Դեպի կոմունիզմ ենք գնում աստիճանաբար: Հետևապես հարկավոր է այժմ ավելի շատ աշխատավորական լայն մասսաներ ներգրավել երկրի կառավարման գործում, նրանց սովորեցնել երկրի ղեկավարման բարդ գործը:

Մեր կարծիքով Ծրագրում պետք է նախատեսել այսպիսի կետ. «Սահմանված ժամկետը լրանալու կապակցությամբ ղեկավարությունից դուրս մնացած աշխատողը (որոշակի ժամկետից հետո) կարող է առաջադրվել նախկին պաշտոնում ընդհանուր հիմունքներով»։

2. Ինչպես նշված է ՍՄԿՊ նոր Ծրագրի նախագծում, գնալով կրճատվելու է կառավարման վարչական ապարատը, զարգանալու է հասարակական կարգով անվճար ղեկավարելու, ծառայելու պրակտիկան։ Իմ կարծիքով ավելորդ ու անտեղի է դեպուտատներին տրվող վարձատրությունը, այն պետք է վերացնել։

ԻԼ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Երևանի Շահումյանի շրջանի Ղուկասավանի գրադարանի վարիչ, ՍՄԿՊ անդամ

## ՄԵՐ ՑԱՆԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ՍՄԿՊ Ծրագրի նախագծի յուրաքանչյուր տողը հուզում, ուրախացնում, ոգեշնչում, թևավորում և նորանոր սխրանքների է կոչում յուրաքանչյուր ազնիվ քաղաքացու։

Ես ևս ունեմ մի քանի դիտողություններ և առաջարկություններ Ծրագրի և Կանոնադրության նախագծերի առանձին կետերի և բաժինների վերաբերյալ։

1. Ժողովրդական տնտեսության ղեկավարումը և պլանավորումը բաժնում գրված է. «... ռուբլով վերահսկել աշխատանքի քանակն ու որակը...»։ Սակայն երբ նայում ենք «Կոմունիզմը ամբողջ մարդկության պայծառ ապագան է» բաժինը, տեսնում ենք, որ առաջին տասնամյակում բոլորի համար կապահովվի նյութական լիություն, ուրեմն և հարկ չկա կոմունիզմի կառուցման երկրորդ և հաջորդ փուլերի համար գրել այս ձևով՝ եթե մարդիկ լիովին ապահովված են, ապա աշխատանքային գործունեությունը իրոք որ նրանց համար կլինի ոչ թե եկամտի ու ապրուստի աղբյուր, այլ հաճույքի, ստեղծագործության, հասարակարգի ավելի լիություն ստեղծելու ու ամրապնդելու աղբյուր։

2. «Սովետները և պետական կառավարման դեմոկրատական սկզբունքների զարգացումը» բաժնում պետք է զետեղել հետևյալ միտքը. «Սովետների ղեկավար օրգանների մեջ ավելի մեծ թվով ընդունակ մարդիկ ներգրավելու, Սովետների դերը, հեղինակությունը ավելի բարձրացնելու համար, համալսարաններում պատրաստել սովետական ապարատի բարձրորակ կադրեր»։

Գաղտնիք չէ, որ այժմ, հատկապես գյուղական վայրերում Սովետներում ղեկավար աշխատանք են տանում շատ դեպքում այնպիսի մարդիկ, որոնք բացարձակապես լավ չեն հասկանում նրանց էությունը, կառավարման ձևը. ավելին, ունեն ցածր գիտելիքներ, որոնց պատճառով Սովետները մի տեսակ նսեմանում են։ Այս բաներից օգտվելով առանձին կոլտնտեսությունների և սովխոզների «ճարպիկ» ղեկավարներ Սովետների ղեկավարներին կախման մեջ են գցում իրենցից, դրանով հեղինակազրկում Սովետները։

3. «Գյուղատնտեսության և գյուղում հասարակական հարաբերությունների զարգացումը» բաժնում պետք է արծարծվի գյուղատնտեսության բնագավառի կադրերի հարցը։ Պետք է հասնել այն բանին, որ բրիգադիրները, ֆերմայի վարիչները, կոլտնտեսության վարչության նախագահները մինչև առաջին էտապի երկրորդ կեսը լինեն միջնակարգ և բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներ, գործիմաց մարդիկ։



4. «Կոմունիստական գիտակցականության դաստիարակման բնագավառում» գլխի ե. կետը ավելի հասկանալի կլինի, եթե «Հասարակության ամեն մի անդամի հավասար հնարավորություններ են տրված ստեղծագործական աշխատանքի ու կրթության համար» նախադասությունից հետո գրվի. «Պետությունը, ելնելով հասարակության ամեն մի անդամի ընդունակություններից ու ձիրքից, հնարավորություն ընձեռի նրանց մեկից ավելի մասնագիտություն ձեռք բերելու, հատկապես հեռակա, երեկոյան և գործարաններին կից բուհերի միջոցով, և կոմունիզմի կառուցման երկրորդ էտապում այդ բանը մասսայական բնույթ կրի»։ Հասկանալի է, դրանով ավելի կարագացվի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, բնակչության հարաճուն պահանջմունքների բավարարումը։

5. Կանոնադրության 2-րդ կետի գ. ենթակետի վերջում պետք է ավելացնել. «Մասնավոր սեփականատիրական հակումներով պարտիականը չի կարող մնալ ՍՄԿՊ-ի շարքերում»։

6. Կանոնադրության 3-րդ կետի գ. ենթակետի սկիզբը լավ կլինի, որ ձևակերպվի հետևյալ կերպ. «Պարտիական ժողովներում, կոնֆերանսներում, համագումարներում, կոմիտեների պլենումներում արդարացիորեն քննադատել ամեն մի կոմունիստի, անկախ նրա գրաված պոստից...», այնուհետև ինչպես տեքստում է։ Որովհետև շատ դեպքերում առանձին կոմունիստներ ճիշտ չեն քննադատում, որի հետևանքով պարտիական կազմակերպությունը ապակողմնորոշվում է։

7. 4-րդ կետի այն մասը, որ նախատեսում է, թե երիտասարդները մինչև 20 տարեկանը ներառյալ պարտիայի մեջ ընդունվում են միայն ՀամԼԿԵՄ-ի միջոցով, լավ կլինի, որ այդ ժամկետը հասցվի մինչև 25 տարեկանը ներառյալ, դրանով բարձրացնելով կոմերիտական կազմակերպության հեղինակությունը։

8. 4-րդ կետում նպատակահարմար է ավելացնել մի ենթակետ, որ ՍՄԿՊ-ի ԿԿ-ն կարող է ՍՄԿՊ-ի անդամության թեկնածուին ժամկետից շուտ անդամ ընդունել, բացառիկ դեպքերում, հերոսության, արիության, խիզախության, անօրինակ սխրանքների համար։

9. Իմ կարծիքով 32-րդ կետը պետք է ավելի պարզեցվի։ Այնտեղ նշված է. արտահերթ (արտակարգ) համագումարի հրավիրում պահանջող կազմակերպությունների իրավունք ունեն ստեղծելու կազմակերպական կոմիտե, որն արտահերթ (արտակարգ) համագումարի հրավիրման հարցում օգտվում է պարտիայի ԿԿ-ի իրավունքով։

Լավ կլինի նշվի, թե նոր ստեղծված կազմակերպական կոմիտեն քանի՞ մարդուց պետք է բաղկացած լինի և այդ կազմակերպությունները, որոնք ստեղծել են կազմակերպական կոմիտե և ընդունում են որոշում, հետագայում պարտիայի հրավիրված համագումարը կընդունի՞ նրա որոշումները որպես հիմք, չէ որ այդ որոշումները գուցե հակասեն պարտիայի ընդհանուր շահերին։

10. 56-րդ կետի այն մասը, որտեղ նշվում է, որ սկզբնական և ցեխային պարտքարտուղարների համար պարտադիր է մեկ տարվա ստաժ ունենալը. այդ հեռու է բավարար լինելուց, քանի որ նա պարտիական աշխատանքի փորձ չունի, դրա համար անհրաժեշտ է առնվազն երեք տարվա պարտիական ստաժ։

11. Ելնելով լենինյան կոլեկտիվ ղեկավարության սկզբունքից, նպա-
տակահարմար է, շրջկոմներում, քաղկոմներում, մարզկոմներում հասարա-
կական հիմունքներով ստեղծել մշտական հանձնաժողով (տարեկան մեկ ան-
գամ փոփոխվող), որը ստուգի և ընթացք տա աշխատավորների նամակնե-
րին (հանձնաժողովի կազմը բաղկացած լինի փորձված ու հմուտ, երկար
տարիների պարտստաժ ունեցող կոմունիստներից)։
12. Միևնույն ժամանակ այդ նույն տեղերում (շրջկոմ, քաղկոմ, մարզ-
կոմ) դարձյալ հասարակական հիմունքներով ստեղծել հանձնաժողովներ
(մեկ տարվա ընտրա-շրջանով), ավելի փորձված, պարտիական երկար
տարիների աշխատանքի փորձ ունեցող, թեորիապես զինված մարդկանցից,
որը ստուգի թեկնածու կամ պարտանդամ ընդունվողի արժանիքները ու նոր
անհրաժեշտության դեպքում հարցը մտցվի բյուրո։

Ռ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Կոտայքի շրջանի Հրազդանի դպրոցական սկզբ-
նական պարտկազմակերպության անդամ

## ԳՏՆՈՒՄ ԵՄ ԱՅՍՊԵՍ

Ամբողջովին հավանություն տալով ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախա-
գծին, միևնույն ժամանակ անհրաժեշտ եմ համարում մի երկու առաջարկու-
թյուն անել։
1. Կանոնադրության 24-րդ կետում, որտեղ ասված է. «Ընտրված են հա-
մարվում այն թեկնածուները, որոնց օգտին քվեարկել է ժողովի, կոն-
ֆերանսի կամ համագումարի մասնակիցների կեսից ավելին», մեր կարծիքով
լավ կլինի գրել ոչ թե կեսից, այլ առնվազն $^{2}/_{3}$-ից ավելին։ Եթե ոչ, ստացվում
է 100 ընտրողից՝ 49-ը դեմ են, բայց ղեկավարն ընտրվում է 2-ի տարբերու-
թյամբ։ Ի՞նչ հեղինակություն կունենա այդպիսի ղեկավարը և ի՞նչ մարտունա-
կություն նրա ղեկավարած կազմակերպությունը։
2. Կանոնադրության նախագծի 25-րդ կետում, որտեղ ասված է. «Պար-
տիական կազմակերպությունը, ելնելով քաղաքական և գործարար հատկանիշ-
ներից, ղեկավար օրգանների կազմի մեջ այս կամ այն աշխատողին կարող է
ընտրել նաև ավելի երկար ժամանակով։ Այս դեպքում ընտրության համար
պահանջվում է քվեարկությանը մասնակցող կոմունիստների ձայների առնվազն
$^{3}/_{4}$-ը»։ Ես գտնում եմ, եթե տվյալ ընտրվողը լուրջ արժանիքներ ունի, ապա
նրան անհրաժեշտ է ոչ թե $^{3}/_{4}$, այլ ճիշտ կլինի ընտրությանը մասնակցողների
ավելի քան $^{9}/_{10}$-ի համաձայնությունը։ Այդ կլինի ավելի դեմոկրատական հի-
մունքներով և զերծ պատահականություններից։
3. 70-րդ կետում, ուր խոսվում է անդամավճարների գանձման մասին, չի
սահմանված ոչ հաստատուն (մշտական) վաստակ ունեցողների անդամա-
վճարների չափը. օրինակ՝ կոլտնտեսականների, տնային տնտեսուհիների, հաշ-
մանդամների և այլն։
Մենք գտնում ենք, որ այդ կետում պետք է պարզություն մտցնել։

Ս. ՀԱԿՈԲՅԱՆ

Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատ, ՍՄԿՊ անդամ

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՍՏԱԼԻՆՅԱՆ ՇՐՋԱՆԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ԴԱՀԼԻՃԻՑ

Երևանի Ստալինյան շրջանը իրավամբ համարվում է ռեսպուբլիկայի ար-
դյունաբերության սիրտը։ Այստեղ են ծնունդ առել և զարգացել սոցիալիստա-
կան ինդուստրիայի խոշորագույն ձեռնարկությունները, որոնք աշխատավորու-
թյան հերոսական ջանքերի արդյունքն են։ Մինչպատերազմյան և հետպատե-
րազմյան հնգամյակների տարիներին արագ տեմպերով ընդլայնվեց շրջանի
արդյունաբերության բազան, մեկը մյուսի հետևից շարք մտան նորագույն
տեխնիկայով զինված գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնց արտադրանքը
հայտնի է Միության սահմաններից դուրս։

Շրջանի աշխատավորությունը մեծ եռանդով լծվեց յոթնամյակի պլաննե-
րի կատարմանը։ Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ նը-
րանք տարեցտարի կրկնապատկում են իրենց հաջողությունները։ Այս տարի
շրջանային պարտիական կոնֆերանսը նրանք նշանավորեցին աշխատանքա-
յին նորանոր սխրանքներով յոթնամյակի բնագծերի նվաճման բնագավառում։

Ոգևորված ձեռք բերած հաջողություններով և կոմունիստական շինարա-
րության հրապուրիչ հեռանկարներով, որոնք կանխատեսվում են ՍՄԿՊ նոր
Ծրագրում, կոնֆերանսի պատգամավորները հավաքվել էին քննարկելու շըր-
ջանի տնտեսական և կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրները, ի
մի բերելու պարտիական կազմակերպությունների աշխատանքը և ընդհանրաց-
նելու նրանց փորձը արդյունաբերության ղեկավարման, սոցիալիստական մըր-
ցության ծավալման, արտադրանքի որակի և աշխատանքի արտադրողականու-
թյան բարձրացման և այլ բնագավառներում։

Որո՞նք են հաջողությունները, նրանց ստվերոտ կողմերը, ի՞նչն է խանգա-
րում հետագա առաջընթացին դեպի կոմունիզմ. այս և այլ կարևոր հարցերը
հուզում էին ինչպես զեկուցողին, այնպես էլ ելույթ ունեցողներին։

Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները,— նշում է իր զեկուցման
մեջ շրջկոմի քարտուղար ընկ. Հովհաննիսյանը,— ընթացիկ տարվա 7 ամսվա
համախառն արտադրանքի պլանը կատարեցին 101,2 տոկոսով, պլանից դուրս
երկրին տալով 3 միլիոն 149 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։

Ստալինյան շրջանում էր, որ առաջին անգամ անմիջապես արձագանքե-
ցին կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների հայա-
կապ շարժմանը։ Այժմ այդ շարժումն ընդգրկում է ավելի քան 21 հազար մարդ։
Կոմունիստական աշխատանքի ձեռնարկության համար պայքարում են Կիրովի
անվան, Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Պոլիվինիլացետատ, Սար-

քաշինական և մի շարք այլ գործարանների կոլեկտիվներ։ Մեծ թվով ցեխեր, բրիգադաներ և առանձին բանվորներ բարձր արտադրական ցուցանիշների և օրինակելի վարքագծի համար արժանացել են կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչմանը։

Անցած վեց ամսվա ընթացքում բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կողմից արվել է մոտ 3700 ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկություն, որոնցից արտադրության մեջ է ներդրվել մոտ 1900-ը։ Դրանից ստացված խնայողությունը կազմում է ավելի քան մեկ միլիոն 600 հազար ռուբլի։

Շրջանային պարտիական կոնֆերանսում կոնկրետ կերպով նշվեցին առաջավոր ձեռնարկությունները։ Ահա, օրինակ, Կիրովի անվան գործարանը։ Ժողովրդական տնտեսության համար կարևորագույն նշանակություն ունեցող այս ձեռնարկության աշխատողների մեծ կոլեկտիվի եռանդուն գործունեությամբ ամեն ամիս ու եռամսյակ համաչափորեն կատարվում և գերակատարվում են պետական պլանները։ Կիրովի գործարանը առաջիններից էր, որ արձագանքեց ռեսպուբլիկայում կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների նշանավոր շարժմանը, և ոչ միայն արձագանքեց, այլև կոմունիստները և կոմերիտականները սոցիալիստական մրցության այդ նոր, առաջավոր ձևը սկսեցին տարածել գործարանի ցեխերում, հերթափոխություններում, տեղամասերում և այլն։ Պատահական չէ, որ այդ շարժումն այսօր մասսայական բնույթ է կրում, գործարանի ողջ կոլեկտիվն է արդեն պայքարում աշխատել և ապրել կոմունիստաբար։

Արտադրական խոշոր վերելք առաջացավ այստեղ հատկապես Ն. Ս. Խրուշչովի այցելության առնչությամբ և ՍՄԿԿ XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը նոր թափ ստացավ։ Գործարանի կոլեկտիվը ընթացիկ տարվա 7 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարեց 104,9 տոկոսով. գերակատարված է նաև տեխնիկա-տնտեսական մնացած բոլոր ցուցանիշների պլանը։

Գործարանի կոլեկտիվը ջանք չի խնայում արագորեն լուծելու յոթնամյակում իր առջև ծառացած խնդիրները և կայուն բազա ստեղծելու կոմունիզմի ճանապարհին նոր բնագծեր նվաճելու համար։

Անընդհատ կատարելագործվում և չթուլացող տեմպերով ընդարձակվում է Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը, որտեղ մեծ աշխատանք է կատարվել թողարկվող մեքենաների կատարելագործման ու արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ։ Բավական է նշել, որ ընթացիկ տարում յուրացվել և ներկայումս մասսայաբար թողարկվում են 15 նոր տիպի մեքենաներ։ Մոդեռնացվել են մեծ թվով հաստոցներ, ստեղծվել են մի քանի հոսքային գծեր և կոնվեյերներ։

Այս գործարանի կոլեկտիվը ռեսպուբլիկայում առաջինը արձագանքեց Մոսկվա քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների հայրենասիրական նախաձեռնությանը՝ մրցություն ծավալելու աշխարհում ամենալավ և բարձրորակ արտադրանք թողարկելու համար։

լավագույն գործարաններ Ստալինյան շրջանում շատ կան, բայց մի կարճառոտ հոդվածում ինչպես գրել այդ բոլորի մասին։

Հաճելի է, անշուշտ միշտ խոսել ու գրել հաջողությունների մասին։ Բայց



Ստալինյան շրջանի պարտիական կոնֆերանսում լուրջ խոսք ասվեց և՛ աչքծակող թերությունների մասին։ Չի կարելի չնշել, որ շրջանի մի շարք ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների վատ աշխատանքի հետևանքով թերակատարվեցին ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ մի շարք արտադրանքների պետական առաջադրանքները։

Այս առումով արժանի քննադատվեցին էլեկտրաշարժիչների, երկաթ-բետոնյա կոնստրուկցիաների գործարանների, հրուշակեղեն-մակարոնի ֆաբրիկայի, Նուբր բրդյա գործվածքեղենի—մահուդի կոմբինատի, Ժողտնտխորհի շինարարության վարչության և այլ ձեռնարկությունների ու հիմնարկների պարտիական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարները։ Մի՞թե պարտիական կազմակերպության և դիրեկցիայի վատ աշխատանքի հետևանքը չէ, որ էլեկտրաշարժիչների գործարանը (դիրեկտոր Ա. Միշչենկո, պարտբյուրոյի քարտուղար Ու. Զփլախյան) աշխատում է իր հնարավորություններից ցածր և սիստեմատիկաբար վերջին ամիսներին թերակատարում է իր պլանները։ Գործարանի պարտիական և տնտեսական ղեկավարությունը անբավարար աշխատանք է տանում արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման ուղղությամբ։ Ակներև է, որ գործարանի ղեկավար ընկերների մոտ բացակայում է բարեխղճությունը։ Այս մասին պետք է հոգա շրջկոմը։

Արդյունաբերության բնագավառում տեղ գտած լուրջ թերություններից է նաև այն, որ մի շարք ձեռնարկությունների՝ կաբելի, ավտոպահեստամասերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, կոմպրեսորների, հախճապակյա գործարանների, դերմանտին-մոմլաթի, «Պոբեդա», Մյասնիկյանի անվան կահույքի ֆաբրիկաների և այլն դիրեկտորներ և պարտիական կազմակերպություններ, հրապուրվելով արտադրանքի համախառն պլանների կատարմամբ, աչքաթող են անում աշխատանքի արտադրողականության բարձրացման, ասորտիմենտի կատարման և որակի ապահովման հարցերը։

Շրջկոմի հաշվետվության մեջ խիստ քննադատության արժանացավ Նուբր բրդյա գործվածքեղենի-մահուդի կոմբինատը։ Նրա նախկին ղեկավարությունը հետևություն չարեց անցյալ կոնֆերանսի որոշումներից, որի հետևանքով էլ ձեռնարկության վիճակը մնաց նույնը, չկատարեց ոչ միայն պլանները, այլև անորակ արտադրանքի պատճառով նրա պահեստներում կուտակվել է մոտ 200 հազար ռուբլու արտադրանք։ Անորակ արտադրանքը գցում է ձեռնարկության մարկան, այն արտադրության թշնամին է. պետք է անողոք պայքար ծավալել նրա դեմ, մինչդեռ այս հարցը անհրաժեշտ սրությամբ չդրվեց կոնֆերանսում, ելույթ ունեցող ընկերները գրեթե չխոսեցին այդ մասին։

Կոնֆերանսը ցույց տվեց, որ շրջկոմը պետք է լրջորեն բարելավի իր ղեկավարությունն ինչպես արդյունաբերության, այնպես էլ շինարարության նկատմամբ։ Չնայած որոշ տեղաշարժերի, դեռևս դրությունը գոհացուցիչ չէ շինարարական կազմակերպություններում։ Շինարարական շատ տեղամասերում ու հրապարակներում աշխատանքի վատ կազմակերպման և հսկողության բացակայության հետևանքով մի շարք կարևոր արդյունաբերական օբյեկտներ ժամանակին շահագործման չեն հանձնվում, ցածր է շինարարական աշխատանքների որակը, չկա հոգատար վերաբերմունք շինանյութերի խնայողության և մեխանիզմների ռացիոնալ օգտագործման նկատմամբ։

խոշոր թերություններ գոյություն ունեն № 3 շինտրեստի վարչության աշխատանքներում (պետ Ա. Մելիքսեթյան)։ Տրեստը աչքի է ընկնում իր կատարած անորակ աշխատանքով։ Մեծ թերություններով շահագործման են հանձնվել Ջաբբախի № 6, 7, 9 խոշոր պանելային բնակելի շենքերը։ Այդ տրեստի ղեկավարությունը, պարտիական կազմակերպությունը (պարտբյուրոյի քարտուղար Կ. Վարդանյան) բոլորովին չի անհանգստացնում Ծերեթելու փողոցի վրա վերջերս խոշոր թերություններով շահագործման հանձնված շենքը։ Ժամանակն է վճռական միջոցների դիմելու շինարարության գործը բարելավելու, պարտկազմակերպությունների պատասխանատվությունը բարձրացնելու՝ շինարարական բարձրորակ աշխատանք կատարելու համար։

Միանգամայն իրավացի էր կոնֆերանսի դելեգատ Հ. Ավետիսյանը, որ խիստ քննադատության ենթարկեց հատկապես Գազշինտրեստի ղեկավարությանը այն բանի համար, որ գազիֆիկացիայի աշխատանքներն ընթանում են շատ դանդաղ, անկազմակերպ, բացակայում է աշխատանքում կուլտուրան, փողոցները անհրաժեշտության և ոչ անհրաժեշտության դեպքում քարուքանդ են արվում և երկար ժամանակ մնում են այդ վիճակում, որը խիստ բացասաբար է անդրադառնում քաղաքի սանիտարական վիճակի վրա։

Միայն տնտեսական հարցերը չէին, որ կոնֆերանսում արծարծվեցին։ Այնտեղ առաջ քաշվեցին ուրիշ շատ կարևոր հարցեր։ Առանձնակի ուշադրություն հատկացվեց սոցիալիստական սեփականության, սովետական օրինականության և հասարակական կարգի պահպանման հարցին։ Կոնֆերանսում բացահայտվեց այն, որ շրջանի միլիցիայի բաժինը, դատախազությունը և դատարանը բավարար չափով չեն համաձայնեցնում իրենց գործունեությունը և առանձին դեպքերում ակտիվ միջոցներ չեն ձեռնարկում հանցագործությունների կանխման և հայտաբերման համար, հաճախ հանցագործների նկատմամբ ցուցաբերում են աններելի մեղմություն։ Վիճակն անբավարար է հատկապես շրջանի դատախազությունում, որի աշխատողներից ոմանք կորցնելով պատասխանատվության զգացումը և օգտվելով թույլ հսկողությունից, առանձին գործերի քննությունը կատարել են մակերեսորեն և միակողմանի, անհիմն կերպով կարճել են մի քանի քրեական գործեր։ Այս ամենի համար պարտիական խիստ պատասխանատվության են ենթարկվել շրջանի դատախազ Ս. Հովհաննիսյանը և քննիչ Ս. Վարժապետյանը, աշխատանքից ազատվել են դատախազի օգնականներ Ի. Մարգարովը, Սարոյանը և քննիչ Ռ. Եգանյանը։ Գործերի նման վիճակը պետք է բացատրել նաև նրանով, որ դատախազության պարտկազմակերպությունը ժամանակին չի ահազանգել, իսկ պարտիայի շրջկոմը չի խորացել դատաքննչական ապարատի գործունեության մեջ։

Այս առնչությամբ ուշագրավ է կոնֆերանսի պատգամավոր Գ. Նալբանդյանի ելույթը։ Նա նշեց, որ շրջանի պարտիական, սովետական և վարչական օրգանները դեռևս թույլ են պայքարում սոցիալիստական սեփականության հափշտակման, կաշառակերության և այլ երևույթների դեմ։

Շրջկոմի գործունեության մեջ տեղ գտած լուրջ թերություններից է այն, որ նա առանձին դեպքերում չի ունկնդրում պարտիական մասսաների ձայնին, անբավարար չափով է հենվում սկզբնական պարտիական կազմակերպությունների վրա։ Պատգամավոր Օ. Գրիգորյանը (Ջեթ-օճառ կոմբինատի պարտկազմակերպության քարտուղար) քննադատեց պարտիայի շրջկոմին այն բանի համար, որ նա երկար ժամանակ է, ինչ ուշադրություն չի նվիրում Ջեթ-օճառ



գործարանի դիրեկտոր Ս. Գևորգյանի վերաբերյալ սկզբնական կազմակերպության կողմից արված ահազանգումներին, որոնք խոսում են այդ ղեկավարի կողմից պետական օրինականությունը խախտելու մասին։

Փաստերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ հասարակական ունեցվածքի հափշտակության դեպքերը հիմնականում տեղի են ունենում այն ձեռնարկություններում, որտեղ թույլ է քաղաքական դաստիարակչական աշխատանքը, որտեղ պարտիական կազմակերպությունները չեն իրականացնում ադմինիստրացիայի նկատմամբ իրենց վերահսկողության ֆունկցիան։ Մի՞թե պատահական է, որ հրուշակեղեն-մակարոնի ֆաբրիկայում, որտեղ ձախողվել էր պարտիական-քաղաքական աշխատանքը, ստեղծվել էին հանրային ունեցվածքը հափշտակելու բարենպաստ պայմաններ։

ՀԿՊ Ստալինյան շրջկոմի գործունեության ամենալուրջ թերություններից մեկը՝ կադրերի հետ տարվող անբավարար աշխատանքն է. այդ են վկայում այն ոչ եզակի փաստերը, որոնք մի շարք ձեռնարկությունների ղեկավար աշխատողների ոչ ճիշտ վարքագծի մասին են խոսում։ Կադրերի ոչ ճիշտ ընտրության պատճառով չէ՞ արդյոք, որ առանձին ձեռնարկությունների ղեկավարության գլուխ են կանգնում այնպիսի անձնավորություններ, ինչպիսին է, օրինակ, ժողտնտխորհի երկաթ-բետոնյա կոնստրուկցիաների գործարանի նախկին դիրեկտոր Ա. Հովհաննիսյանը, որը կորցնելով կոմունիստի կերպարը, օգտվելով պարտիական կազմակերպության թույլ հսկողությունից, յուրացրել է մեծ չափերի հասնող պետական միջոցներ։ Իրենց արատավորել են նաև բրդյա-մանվածքեղենի ֆաբրիկայի դիրեկտոր Ս. Մխիթարյանը, պահածոների գործարանի դիրեկտոր Ս. Պետրոսյանը և ուրիշներ։

Թվում էր, թե շրջկոմի քարտուղար ընկ. Հ. Հովհաննիսյանը պետք է ավելի խորապես վերլուծեր այս փաստերը, նշեր շրջկոմի թույլ տված սխալները, բայց նա այդպես չվարվեց։ Նա այս ամենի պատճառները վերագրեց միայն սկզբնական կազմակերպությունների թույլ հսկողությանը, ոչինչ չասելով շրջկոմի հսկողության մասին։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունը բարձրացնելու, նրանց ցույց տրվող ղեկավարությունն ու օգնությունը բարելավելու, պարտիական հսկողությունը արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարության և տրանսպորտում ավելի գործուն դարձնելու, կադրերի հետ տարվող աշխատանքը բարելավելու անհրաժեշտության մասին խոսեց իր ելույթում նաև ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Գ. Հարությունյանը։

Ստալինյան շրջանի պարտիական կոնֆերանսը լսեց նաև շրջկոմի քարտուղարներ Մ. Բալայանի և Ա. Վեսելովայի զեկուցումները ՍՄԿՊ նոր Ծրագրի և Կանոնադրության նախագծերի վերաբերյալ։ Այս կապակցությամբ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցող պատգամավորները, ինչպես և ամբողջ կոնֆերանսը լիովին հավանություն տվին ՍՄԿՊ նոր Ծրագրի և Կանոնադրության նախագծերին։

Երևանի Ստալինյան շրջանի պարտիական կոնֆերանսը ցույց տվեց, որ պարտիական կազմակերպությունները լավ են գիտակցում իրենց առջև դրված տնտեսական ու քաղաքական խնդիրները և պատրաստ են մոբիլիզացնելու շրջանի աշխատավորությանը կոմունիզմի ծավալուն կառուցման հոյակապ պլանների կենսագործման համար։

Խ. ԵՐԻՑՅԱՆ

ԳԻՆԸ՝ 25 Կ.

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Ճառ ռադիոյով և հեռուստատեսությամբ 1961 թվականի հունիսի 15-ին». *34 էջ, տիրաժ 3000, գինը 04 կոպ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Դեպի գրականության և արվեստի նոր հաջողությունները». *54 էջ, տիրաժ 3000, գինը 17 կոպ.։*

Ա. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ—«Ռևոլյուցիան Անդրկովկասում և Ռուսաստանի պատվիրակները». *546 էջ, տիրաժ 3000, գինը 86 կոպ.։*

«Արևմտյան Գերմանիան այսօր». *214 էջ, տիրաժ 2000, գինը 20 կոպ.։*

«ՀՍՍՌ Քրեական օրենսգիրք». *168 էջ, տիրաժ 10.000, գինը 38 կոպ. (Հայերեն և ռուսերեն լեզուներով)։*

«ՀՍՍՌ Քրեական դատավարության օրենսգիրք». *236 էջ, տիրաժ 7000, գինը 35 կոպ. (Հայերեն և ռուսերեն լեզուներով)։*

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ—«Գրական և քննադատական ակնարկներ». *174 էջ, տիրաժ 3000, գինը 42 կոպ.։*

Հ. ԹԱՄՐԱԶՅԱՆ—«Շիրվանզադե. կյանքն ու գործը». *590 էջ, տիրաժ 3000, գինը 1 ռ. 25 կոպ.։*

Ռ. ԶԱՐՅԱՆ—«Ադամյան. կյանքը». *532 էջ, տիրաժ 3000, գինը 2 ռուբ. 04 կոպ.։*

«Սովետական Ուզբեկստանի բանաստեղծները». *174 էջ, տիրաժ 3000, գինը՝ 52 կոպ.։*

«Ուզբեկական պատմվածքներ». *352 էջ, տիրաժ՝ 5000, գինը 60 կոպ.։*

ՌԻՇԻՆՍԿԻ—«Մանկական ակնոց». *32 էջ, տիրաժ 20.000, գինը 18 կոպ.։*

Ս. ԲԱԼԱՅԱՆ—«Վիրավոր լուսանը». *96 էջ, տիրաժ 5000, գինը 16 կոպ.։*

«ՀԱՅԳԻՐՔ»